## ՋՆԳԱ. ՄԵՐ ԵՐԳ

Վ. ՏԱԼՅԱՆ

Ամառ թե ձմեռ
Զնգա՛, երգ դու մեր,
Հնչի՛ր ճամբարում,
Թավուտ անտառում.
Քո ձայնը հզոր
Թող թնդա ուժգին,
Լցնի սար ու ձոր։

Խարույկների մոտ,
Լեռներում ձյունոտ,
Դաշտերում մեր ծով
Դու հազար ձայնով
Սփյա՛, շառաչիր
Եվ անուշ կանչիր։

Զնգա՛, երգ դու մեր,
Հարազա՛տ ընկեր,
Հնչիր անդադար
Ու տար մեզ պայծառ
Բարձունքները վե՛ս
Համառ մարտերի
Վառ դրոշի պես։

## Խարույկի շուրջը

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Ոսկե գնդակն արեգակի
Գլորվեց ու ձորն ընկավ,
Եվ խավարում վառվեց կրկին
Թեժ խարույկը մեր հսկա։

Թիթեռների պես գույնզգույն,
Թիթեռների պես կայտառ
Թռչկոտում ենք ու պտտվում
Խարույկի շուրջն անդադար։

Օծված ցողով շող-ադամանդ,
Ծաղիկներն են մեզ բուրում,
Ու լեռնային հովը մարմանդ
Մեր ճակատն է համբուրում։

Կարկաչում է հեռո վարար
Ջրույցների ջինջ առուն,
Ու սրտում մեր ասես անմար
Նոր խարույկներ են վառվում...

Լսում ենք մենք ու հմայվում
Վրանի տակ երկնքի.
Վերից աստղերն են մեզ նայում,
Նախանձում մեր խարույկին։

Նկ. Ա. ԲՈՑԱՋՅԱՆԻ

№ 7 1959 թ.
ՀՈՒԼԻՍ




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
31-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ԱՐԲԱՆՅԱԿԸ այգեստանում

ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



Ո՛չ, դա մակետ չէր, այլ իսկական արբանյակ, որ պետք է շուտով սլանար երկինք և պտտվեր Երկրի շուրջը՝ իր ռադիոալիքները տարածելով եթերում։ Դա իսկական արբանյակ էր դեպի ետ ձգվող չորս ռադիոանտենաներով ու ճակատին շողացող կարմիր աստղով։ Դա մի իսկական արբանյակ էր, որի ներսում ութ հատ էլեկտրական մարտկոց կար ու ռադիոհաղորդիչ, որոնք միացրած չէին դեռևս։ Դա մի իսկական արբանյակ էր, մի քանի անգամ ավելի մեծ, քան ամերիկյան առաջին արբանյակը, իսկական արբանյակ, որը սակայն գտնվում էր ոչ թե Մոսկվայի ցուցահանդեսի գիտության տաղավարում և ոչ էլ այն դաշտում, որտեղից արձակվում են սովետական արբանյակները, այլ... Երևանի Այգեստան թաղամասում, պտղատու այգու եզրին գտնվող մի հին մարագում ու մի օր հետո պիտի օդ բարձրանար։

Ինչպես տեսնում եք, այս վերջին նախադասությամբ ես գործս փչացրեցի։ Դուք իսկույն ժպտում եք և չեք հավատում, որ արբանյակն իրոք իսկական է եղել։ Բայց մի՛ շտապեք, հիմա ես ամեն ինչ սկզբից կպատմեմ և դուք կտեսնեք, որ այստեղ անհասկանալի ոչինչ չկա։

## ԱՂԻ-ԲՈՒՂԻ՜, ԱՂԻ-ԲՈՒՂԻ՜...

— Աղի-բուղի՜, աղի-բուղի՜...— ձայն էր տալիս պառավը իր նվազ ձայնով, երբ հեռվից որևէ անցորդ էր տեսնում, իսկ երբ փողոցում ոչ ոք չէր երևում, նա աչքերը փակում ու ննջում էր։

Դա Արեգնազան տատիկն էր, որը թեև միշտ կողքին բուրդ չլխելու մի փայտ ուներ և նրանով վախեցնում էր թաղի երեխաներին, բայց շատ բարի էր և առատաձեռն։ Երբ երեխաներից մեկն ու մեկը մոտենում էր աղի-բուղի գնելու, Արեգնազան տատը սկզբում լցնում էր նրան հասանելիք մի բաժակը, հետո էլ մի բուռ ավելացնում էր։ Հաճախ էլ, արդեն հեռացող տղային կամ աղջկան ետ էր կանչում ու ասում.

— Հը՞, ոնց որ քիչ եղավ,—ու էլի մի բուռ ավելացնում էր։

Այսպես, պառավը նստում էր իր դռան առաջ՝ առավոտից մինչև իրիկուն և հաշվում օրերը։ «Երեք օր մնաց», «երկու օր մնաց ֆուտբոլի խաղին»։ Դուք կարծում եք, թե նա՞ էլ բոլելշչիկ էր։ Ոչ։ Պարզապես այդ օրը ծախվում էր նրա ամբողջ աղի-բուղին։ Իսկ մնացած օրերին նա քիչ էր վաճառում, ընդամենը մի տաս-տասնհինգ բաժակ։

Իսկ մի օր էլ, երեկոյան Արեգնազան տատը նր-

կատեց, որ ամբողջ աղի-բուղին մնացել է տեղում։

— Յա՛, էս ի՞նչ պատահեց էրեխեքին, ինչու՞ չեկան։ Ամբողջ օրը երկու բաժակ ծախեցի։

Նա փնթփնթալով վերցրեց լիքը տաշտակը, բուրդ չրխելու հիայրը և մտավ բակ։ «Տեսնես ի՞նչ պատահեց էսօր,— մտածում էր նա ողջ գիշեր,— երևի էրեխեքը տեղ են գնացել, էքսկուրսիա-մեքսկուրսիա» — եզրակացրեց նա ի վերջո։ Բայց Արեգնազան տատի զարմանքն ավելի շատացավ, երբ հաջորդ օրն էլ հաճախորդները չավելացան։ Այդպես շարունակվեց մի քանի օր, մի շաբաթ, տասը օր, ու խեղճ պառավը չէր կարողանում հասկանալ, թե ինչ պատահեց հանկարծ։ Ճիշտ է, ֆուտբոլի օրերին ստադիոն գնացողները դարձյալ նրա ողջ ապրանքը սպառում էին, բայց հանելուկը պառավին հանգիստ չէր տալիս։ Թաղի երեխաները կարծես թե բոլորը խոսքերը մեկ էին արել, որ էլ աղի-բուղի չուտեն։ «Զիլինի՞ մոտերքում ուրիշ վաճառող է լույս ընկել» — մտածեց նա ու մի օր էլ անցավ ամբողջ նրբանցքով, հասավ մինչև փողոցի անկյունը և իր դարդի մասին գանգատվեց պաղպաղակ վաճառողին, բա չես ասի՝ էսպես ու էսպես։

— Վա՛յ, բռունամ ես,— ասաց պաղպաղակ վաճառող կինը,— իմ պաղպաղակն էլ մի շաբաթ կլինի քիչ են տանում։

— Յա՛,— մրմնջաց պառավը և օրորվելով վերադարձավ տուն։ Նրա ճանապարհորդությունն այդպես էլ ոչ մի արդյունք չտվեց, ընդհակառակը, ամեն ինչ խառնեց իրար։ Խեղճ Արեգնազան տատն ի՞նչ իմանար, որ...

## — ՄԱ՛, ՊԱՂՊԱՂԱԿ...

Իսկ հարևան բակում այդ ժամանակ մի զանգրահեր, սևուկ տղա կպել էր մորն ու պոկ չէր գալիս.

— Մա՛, պաղպաղակ...

Մայրն առարկում էր.

— Չէ՛, Արամ ջան, քեզ պաղպաղակ չի կարելի, կոկորդդ կմրսի, քո երեկ է անգինադ անցել։

Բայց ո՞վ ես ասում։ Արամն սկսեց լաց լինել ու պաղպաղակ ուզել։

— Լա՛վ,— ասաց մայրը վերջապես,— սպասիր գործս պրծնեմ, խանութ եմ գնալու, հետս պաղպաղակ կբերեմ։

— Վա՛յ, չէ, մայրիկ, ես հիմա եմ ուզում, դու փողը տուր՝ ես ինքս կառնեմ։

Մայրը մտածմունքի մեջ ընկավ։

— Գիտե՞ս ինչ, Արամ,— վերջապես ասաց նա,— առ քեզ մի ռուբլի, գնա աղի-բուղի բեր, չէ՞ որ դու աղի-բուղի էլ ես սիրում։

— Հա՛, մամ ջան,— իսկույն համաձայնվեց տղան ու փողը վերցնելով դուրս վազեց։



— Աղի-բուղի՛... — նրան տեսնելով ձայն տվեց պառավը, սակայն Արամը վազելով անցավ Արեգնազան տատիկի մոտից և խելի չնայեց էլ բոլոր եգիպտացորենի կույտին, որ երիցուկի ծաղկի նման շողշողում էր արևի տակ։ Նա վազեց մինչև նրբանցքի վերջը, թռավ աղյուսե ցածրիկ պատի վրայով ու մտավ հոլաստան մի այգի։ Այգու մյուս ծայրին մի հին մարագ կար։ Նա վազեց ուղիղ դեպի այդ մարագը, որի դռների մոտ երկու տղա էին նստած։ Նրանցից մեկը, որ շեկ մազեր ուներ և պեպենոտ էր, դեռ հեռվից Արամին տեսնելով վեր կացավ ու վազեց նրան ընդառաջ։

— Հը՛, բերե՞լ ես,— անհամբեր հարցրեց նա։

— Մի ռուբլի,— հևալով ասաց Արամը և հպարտ նայեց գետնի վրա նստած տղային։

Սա առանց վեր կենալու ձեռքը պարզեց ու վերցրեց ռուբլիանոցը։

— Հազիվ պոկեցի․ չէր տալիս, ասում էր պաղպաղակն ինձ վնաս է,— հևասպառ վրա տվեց Արամը։

— Լա՛վ,— ասաց նստած տղան,— գնա ներս։

Երբ Արամը ներս մտավ, խարտյաշ տղան դարձավ նստածին.

— Օնիկ, էլ մի ուշացնի, էսօր գնանք ու ամեն ինչ առնենք, արդեն փողը հերիք է։ Սկսենք։



— Ի՞նչ է հերիք,— ջղայնացավ Օնիկը,— բա գործիքներ, բա՞...

— Գործիքներ տանից կբերենք։ Ես երկու հատ խարտոց կբերեմ, ազնիվ խոսք, հերս է տվել։ Մուրճ էլ ունեմ։ Դու էլ քո գործիքները ունես։

— Լավ,— նորից կարճ կտրեց Օնիկը ու տեղից վեր կենալով, ինքն էլ մտավ ներս։ Խարտյաշ տղան հետևեց նրան։

## ՄԱՐԱ՞Գ, ԹԵ՞ ՑԱԽԱՆՈՑ

Արամն էլ, Օնիկն էլ, Վարազն էլ, որ հենց այն խարտյաշ տղան էր, դեռ աշխարհ չէին եկել, երբ այդ մրգատու այգու տեղում մեծ կալ էր։ Այնտեղ քաղաքի արվարձանի բնակիչները ցորեն էին կալսում ու դարմանը լցնում մարագ։ Բայց հետո քաղաքը մեծացավ, իր մեջ առավ արվարձանն էլ, կալն էլ։ Դրանից հետո միայն թաղի երեխաներն էին ազատ ժամերին հավաքվում այնտեղ ու զանազան խաղեր խաղում։ Կալը մեծ էր, բոլորին տեղ էր անում. մի ծայրում ֆուտբոլ էին խաղում, մյուսում՝ լախտի, իսկ մարագի մոտ աղջիկները խաղում էին իրենց սովորական պահմըտոցին։ Հետո կալատեղում պտղատու այգի գցեցին, իսկ մարագը դարձրեցին ցախանոց, բայց մարագ անունը այդպես էլ մնաց վրան։ Երեխաներն էլ սովորականի նըման նորից հավաքվում էին մարագի շուրջը, պահմտոցի խաղում, կամ լուսնյակ գիշերներին լսում Ավետիք պապի՝ այգեպահակի երկար ու խորհրդավոր հեքիաթները։ Հետո այգին սկսեց պտուղներ տալ։ Ավետիք պապը խստացավ, էլ երեխաներին այգի չէր թողնում, բայց մարագի մոտ թողնում էր։ Դե հիմա արդեն հին մարագը որպես ցախանոց էլ չէին օգտագործում։ Մնացել էին այնտեղ չգիտես ում սայլի մեծ անիվը, մի երկու անիվի դող, մի հսկայական կոճղ, որի վրա մինչև վերջ խրված մնացել էին երկու երկաթե սեպեր։ Ըստ երևույթին, ժամանակին ցանկացել էին կոճղը կոտրատել, բայց հետո ձեռ էին քաշել այդ մտքից։

Երբ Օնիկն ու Վարազը ներս մտան, այնտեղ արդեն յոթ-ութ տղաներ կային։ Մի քանիսը նստոտել էին կոճղի վրա, մյուսները տեղավորվել անիվին՝ իսկ երկուսն էլ Արամի հետ կանգնած վիճում էին։

Օնիկի և Վարազի ներս մտնելը վեճը չընդհատեց։ Ընդհակառակը, նրանց վեճի առարկան մեծ խոսակցության նյութ դարձավ։ Այգու ցողուններն արդեն բավական մեծացել էին, և տղաները գիտեին, որ շուտով հայտնվելու է Ավետիք պապը։ Մի բան պարզ էր, այն, ինչ նրանք ուզում էին անել մարագում, Ավետիք պապից թաքցնել չէր կարելի։ Մնում էր՝ կամ իրենց մտադրության մասին հայտնել Ավետիք պապին, կամ տեղափոխվել մի այլ տեղ։ Հենց վեճն էլ այդ մասին էր։

— Տղե՛րք,— ասաց Օնիկը,— ես ամեն ինչ մտածել եմ, ուրիշ տեղ եմ փնտրել, բայց ոչ մի հարմար բան չեմ գտել։

— Է՛, ի՞նչ պիտի անենք, վաղը Ավետիք պապը կգա, և ամեն ինչ հայտնի կդառնա։ Մենք հո չե՞նք կարող նրանից էլ թաքցնել,— վրա տվեց վիճողներից մեկը՝ Սաքոն։

Ու նորից վեճը բորբոքվեց։ Տղաներն աղմկեցին, ամեն մեկը մի բան էր ասում։ Հարցը լուծեց էլի Օնիկը.

— Մի ճար է մնում,— ասաց նա,— Ավետիք պապին էլ պիտի մասնակից անենք մեր գործին։

Բոլորը մի պահ լռեցին, բայց նորից աղմուկ բարձրացավ․
— Բան դուրս չի գա...
— Ամեն ինչ ջուրը կընկնի։
— Ավետիք պապն հավատացյալ է։
— Լա՛վ կլինի, լավ կլինի,— բացականչում էին մի քանիսը։
— Ես կհամոզեմ Ավետիք պապին,— ասաց Օնիկը,— կհամաձայնեցնեմ, կտեսնեք, նա մեզ կօգնի։
Սրանով էլ տղաները վեճն ավարտեցին։

## ՕՆԻԿԸ

Ամենից երկար Օնիկի հոլն էր պտտվում, ամենից բարձր Օնիկի օդապարիկն էր թռչում, ամենադիմացկունը Օնիկի պատրաստած տնակներն էին, իսկ երբ նա փողոց էր դուրս գալիս իր պատրաստած երեք անիվանի հեծանիվով, ոչ ոք նրա հետևից հասնել չէր կարող։ Հեծանիվի միայն անիվներն էին իսկական, որ նա հանել էր հարևանի տղայի փչացած ու աղբանոց նետած հեծանիվից։ Մնացածն ինքն էր սարքել։ Նա զանազան զայթակղիչ բաներ ուներ՝ չինական մարտկոցավոր լապտեր, տասներկու բերան ունեցող դանակ (ճիշտ է, նա բերան էր հաշվում նաև բիզն ու խցանահանը), զսպանակավոր խաղալիքներ, այնպիսիք, որ ուրիշ ոչ ոք չուներ։ Անգամ՝ հայրիկը նրա համար զսպանակավոր, լարվող մի խաղալիք-ավտոմեքենա էր առել, Օնիկը մի երկու օր էր նրանով խաղում միայն։ Հետո նա դուրս կգար փողոց ձեռքին մի խաղալիք-թռչուն, որը գետնի վրա գնում ու թևերն անընդհատ թափահարում էր։ Դա հենց հայրիկի գնած նույն ավտոմեքենան էր, որին Օնիկը թիթեղե թևեր ու այլ հարմարանքներ էր ավելացրել։

Այդպես էր Օնիկը։ Անհնարին էր, որ նա չքանդեր իր խաղալիքները, վերակառուցեր կամ մի նոր բան չշիներ։ Թաղի երեխաները նրան շատ էին սիրում և վախենում էին նրանից։ Սիրում էին, որովհետև նրա մոտ էին վազում ամեն անգամ, երբ փչանում էին նրանց խաղալիքները։ Նրա մոտ էին վազում, երբ հեծանիվի շղթան էր դուրս ընկնում, նրան էին դիմում, երբ անհրաժեշտ էր լինում որևէ նոր բան շինել։ Բայց վախենում էին նաև, որովհետև Օնիկը երբեմն ծեծում էր նրանց, ձեռքներից առնում իրեն անհրաժեշտ իրը.

— Քո ինչի՞ն է պետք, տուր ինձ,— ասում էր նա ու համաձայնություն չստացած խլում անվակը, զսպանակը կամ թիթեղի կտորը։

## ՇԱՐԺՎՈՂ ԱՍՏՂԸ

Թաղի բոլոր երեխաները բարձրացել էին կտուր։ Օնիկը հեռադիտակ ուներ ձեռքին և նստել էր կտուրի ամենաբարձր տեղում, ծխնելույզի վրա, իսկ Վարազը կտուրի սուր ծայրին՝ ձեռքին իրենց արթնացուցիչ ժամացույցը։ Մնացած երեխաները շարվել էին նրանց աջ ու ձախ կողմերում։ Բոլորն էլ նայում էին երկնքին, որ կապու՛յտ-կապու՛յտ ձգվում էր ծառերի կատարներից վեր։ Երեկոյանում էր, և երկինքն հետզհետե պղտոր գույն էր ստանում, իսկ աջում, Արարատի կողմը նուրբ վարդագույն երանգով էր պատած։

— Քսան րոպե դեռ կա,— ասաց Վարազը նայելով իր արթնացուցիչ ժամացույցին։

— Քսան րոպե՜,— ծոր տվեցին երեխաները։

Իսկ Օնիկը գո՞հ էր։ Ճիշտ է, նա էլ էր շտապում, բայց անհանգստանում էր, որ երկինքը դեռ չի մթնել։

— Լույս որ եղավ, ոչինչ չենք տեսնի,— ասում էր նա։

Ու երեխաներն անհամբեր սպասում էին։

Երկինք էր արձակվել սովետական երրորդ արբանյակը։ Այդ օրը նա պիտի անցներ Երևանի վրայով. ահա թե ինչու էին Թաղի երեխաները բարձրացել կտուր և ինչու էին անհամբեր նայում Վարազի արթնացուցիչ ժամացույցին։ Ճիշտ է,



արբանյակը նրանց համար նորություն չէր։ Նրանք արդեն տեսել էին Երկրի առաջին արբանյակը։ Ասենք, բոլորն էլ ասում էին, թե տեսել են, բայց իրականում տեսել էր միայն Օնիկը։ Ահա թե այդ ինչպես էր եղել։ Ուշ աշնանային մի երեկո բարձրացել էին այս նույն կտուրի վրա ու նայում էին երկնքին։ Հանկարծ Արամը ճչաց.

— Արբանյա՜կը, արբանյա՜կը, տեսնում եմ արբանյա՜կը։

— Ո՞ւր է, ո՞ւր է,— հարցրեցին այս ու այն կողմից։

— Ա՛յ, այնտեղ, ամպի մոտ, տեսնո՞ւմ եք, հիմա կմտնի ամպի տակ։

— Տեսնու՜մ եմ, տեսնու՜մ եմ,— վրա տվեցին այս ու ա՛յն կողմից։



Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Եվ իրոք, մի աստղաձև լուսատու սլանում էր դեպի դիմացի ամպը։

— Տեսնու՜մ եմ, տեսնու՜մ եմ,— բացականչում էին ոգևորված երեխաները, իսկ մի քանիսը ձեռքները ճակատին դրած, անհանգստացած նայում էին երկնքին և այդպես էլ ոչինչ չտեսան։ Լուսատուն մտավ ամպի տակ։

— Ափսո՜ս, անցավ ամպի տակ,— ասաց Արամը և հպարտ նայեց ընկերներին։ Իսկ Օնիկը լուռ նայում էր երկնքին։ Եվ այն ժամանակ շատերը հուսահատ հայացքները կտրել էին երկնքից, երբ Արամը կտուրից ցած էր իջել, որ ընկերներին ու ծնողներին ասի իր տեսածի մասին։ Ամպի տակից դուրս պրծավ մի կարմրավուն կետ և մի պահ շողշողալով երկնքի բաց կտուրի վրա, մտավ հարևան ամպի տակ։ Նա սլանում էր քիչ առաջ հայտնված լուսատուի ճիշտ և ճիշտ հակառակ ուղղությամբ։

— Արբանյա՜կը,— բացականչեց Օնիկը,— արբանյա՜կը, արբանյա՜կը...

Իսկ արբանյակն արդեն անհայտացել էր։ Երեխաները տարակուսանքի մեջ ընկան։ Նրանք չգիտեին, թե որին հավատան։ Չէ՞ որ արբանյակն արդեն մտել էր ամպի տակ։ Քիչ հետո ամեն ինչ պարզ դարձավ։ Երբ ամպը հեռացավ, նրա տակից դուրս եկավ Արամի տեսած «արբանյակը», որն ընդամենը մի վառ աստղ էր։ Ամպի շարժումը թյուրիմացության մեջ էր գցել Արամին։ Նրան թվացել էր, թե աստղն է սլանում դեպի ամպը, մինչդեռ հակառակն էր եղել։

Այդ անցյալ աշնանն էր, բայց Արամը դեռ չի մոռացել, թե ինչպես խաբվեց։ Դրա համար էլ հիմա, թեև դեռ ժամանակ շատ կա, բայց հայացքը երկնքից չի կտրում։

Վարագը նորից նայեց ժամացույցին։ Մնացել էր մի քանի րոպե։ Բոլորը նայում էին անամպ երկնքին, և ահա երևաց լուսատու աստղը, սովետական երրորդ արբանյակը։ Այս անգամ արդեն բոլորն էլ տեսան, թե ինչպես երկնքով սլացավ արհեստական աստղը և կորավ հորիզոնի հետևում։ Ուրախ բացականչություններից ու ծափերից կտուրը թնդաց, և միայն Օնիկն էր լուռ։ Նա հայացքը հառած կտուրի ինչ-որ մի կետին, մտածում էր։ Հետո կարծես թե սթափվեց ու մոտենալով Վարագին, ասաց. «Կգաս մարագի մոտ»։

## ՎԱՐԱԳԸ

«Շեկո», «Զալիկ», «Վարո» — այսպես էին կանչում նրան թաղի տղաները՝ մինչև Օնիկի հետ մտերմանալը։ Բայց երբ նա մտերմացավ Օնիկին, միանգամից հիշեցին նրա իսկական անունը՝ Վարագ։ Նա մի սովորություն ուներ. բարձրանում էր իրենց ցան կտուրը և ոտները ցած կախած

ժամերով նստում էր այնտեղ, նայում կապույտ երկնքին, դիմացի բլուրներին, որոնց լանջերին կանաչում էր նորատունկ անտառը։ Հաճախ նա դասագրքերն էլ հետը տանում էր կտուր ու դասերն այնտեղ պատրաստում։ Նախաճաշն արդեն նա կտուրին էր անում։ Լավաշի մեծ բրդուճը ձեռքին նա նստում էր իր սովորական տեղն ու զրույցի բռնվում ներքևում խաղացող տղաների հետ։ Սկզբում մայրն անհանգստանում էր ու միշտ ձայն էր տալիս.

«Վարա՛գ, ցած իջիր, կընկնես»,— բայց հետո տեսնելով, որ տղան զգույշ է, էլ չէր անհանգստացնում նրան. «Թող դասերը սովորի»,— ասում էր։ Հետո նրանց միահարկ, ցածրիկ տունը քանդեցին ու տեղը մեծ շենք կառուցեցին։ Վարագն այլևս կտուր չէր բարձրանում։ Մեկ՝ որ վախենում էր ոտքերը կախ նստել, հետո էլ մեծացել էր արդեն, նրան արդեն բոլոր խաղերին մասնակից էին անում, նույնիսկ դարպասապահ էին նշանակում ֆուտբոլ խաղալիս։

Երբ մարագի մոտ հավաքվում էին թաղի երեխաները, լսում Ավետիք պապի հեքիաթները, Վարագը լուռ ունկնդրում էր և երբեք հարցեր չէր տալիս։ Տղաներն էլ էին հաճախ զանազան պատմություններ անում, բայց Վարագից դեռ ոչ մի բառ չէին լսել։ Նա լսում էր ուրիշներին և գոհ էր դրա համար։ Բայց մի օր էլ, երբ լուսնյակ գիշերով բոլորը հավաքվել էին մարագի մոտ, սպառել իրենց ամբողջ պաշարը, Արամն ասաց.

— Վարա՛գ, մի բան էլ դու պատմիր։

Վարագը մտածեց ու սկսեց.

— Լինում է, չի լինում, մի տղա է լինում...— Ու նա պատմեց մի երկար պատմություն այդ տղայի մասին, որն անընդհատ արկածների է հանդիպում ու վերջը մի կենդանի աղվես շալակը գցած վերադառնում է տուն։

Երեխաներն սկզբում ուշադիր լսում էին, հետո մտածեցին, թե Վարագն իր կարդացած գրքերից մեկնումեկն է պատմում և էլի լուռ լսում էին։ Բայց ահա, երբ նա իր պատմությունն ավարտեց, երեխաներից մեկը հարցրեց.

— Էդ գրքի անունն ի՞նչ էր։

— Ի՞նչ գիրք,— զարմացած հարցրեց Վարագը։

— Էդ որ պատմեցիր։

— Չգիտեմ, ես գրքից չեմ պատմել, ինձ հետ է պատահել։

— Փչո՛ւմ ես,— ասաց տղաներից մեկը, ու բոլորը ծիծաղեցին։ Վարագը խիստ վիրավորվեց։ Ինչո՞ւ են ծիծաղում, չէ՞ որ ուշադիր լսում էին։ Ճիշտ է, այդ դեպքն իր հետ չէր պատահել, բայց մի օր կտուրին նստած նա տեսավ, թե ինչպես է ինքը գնում, հանդիպում արկածների ու աղվեսը շալակին վերադառնում տուն։ Հետո Վարագը նկատեց, որ ոչ մի տեղ էլ չի գնացել, որ դեռ նստած է իրենց տան կտուրին ու աղվեսն էլ չգիտես, թե ուր է կորել։

Այդպիսի մտքեր Վարագը շատ էր ունենում։ Ինքը իսկի չէր էլ ուզում նման բաների մասին մտածել, բայց թե որտեղի՞ց էին նրանք գալիս, մտնում իր գլուխը՝ բան չէր հասկանում։

Ընկերների ծիծաղից վիրավորված, նա որոշեց այլևս ոչ ոքի ոչինչ չպատմել։ Ու այնուհետև նորից Վարագը լուռ էր մնում և միայն ուրիշներին լսում։

Շատ երազկոտ տղա էր Վարագը։ Ա՛յ, հիմա էլ շտապ-շտապ ընթրելով, նա դուրս եկավ տնից ու գնաց մարագի մոտ։ Տեսնես ի՞նչ պիտի ասի Օնիկը։ Քիչ հետո նա մոռացավ Օնիկին։ Ոտները տանում էին դեպի մարագ, իսկ միտքը թռել էր հեռո՜ւ-հեռո՜ւ, արբանյակի հետքերով։

(Շարունակելի)

## ՔԱՅԼԵՆՔ, ՊԻՈՆԵՐՆԵՐ, ԱՍՏԻՃԱՆՆԵՐՈՎ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

I

Ժպտա՛, վառ արև,
Ալ ճաճանչներով,
Քայլենք, պիոներներ,
Աստիճաններով։

Ջա՜ն, «Յոթնամյակի
Արբանյակ—ջոկատ»,
Դուրս գանք ուղեծիր՝
Դեպի աշխատանք։

II

Աստիճաններ են
Ամեն քայլը մեր,
Աստիճաններով
Բարձրանում ենք վեր։

Մանկական մեր ջերմ,
Մատաղ սրտերում,
Պայծառ Լենինի
Անունն ենք կրում։

III

Սիրենք աշխատանք,
Ուսում, երգ ու պար,
Աշխատենք, ապրենք
Կոմունիստաբար։

Ջա՜ն, «Յոթնամյակի
Արբանյակ—ջոկատ»,
Դուրս գանք ուղեծիր՝
Դեպի աշխատանք։

# ՔԵՌԻ [illegible]

ԱՂԱՎՆԻ

Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ

Ամեն մարդ էլ մի որևէ թուլություն ունենում է։ Ես, օրինակ, շատ եմ սիրում գյուղական թանապուրը. այն, որ եփում են կավե կճուճի մեջ և նույն ծագումն ունեցող չանախով էլ բերում դնում են առջևդ։ Այդ թանապուրի երեսին յուղի մանրիկ կաթիլներ են լողում, դրանց շուրջն էլ՝ բոստանից հենց նոր քաղած համեմի կանաչ թերթիկներ։ Այս զարդարանքի շնորհիվ հիշյալ թանապուրը կոչվում է «ջեհեզով» և այնպիսի բուրմունք է ունենում, որ մարդ, առանց ուտելու, հենց միայն բուրմունքից էլ կարող է խենթանալ։

Եվ ամեն անգամ, երբ մեր կամ հարևանի խոհանոցից ինձ է հասնում այդ թանապուրի բուրմունքը, ես շատ մեծ կարոտով մտաբերում եմ մեր գյուղը։

Դա մի այսպիսի գյուղ էր. փոքրիկ, գետնափոր խրճիթներով, կտուրներին՝ խոտի դեզ, բակերում՝ աթարի ամրոց, երդիկներին՝ կապույտ ծուխ, ծխից մի քիչ վերև էլ՝ Արագածի արծաթափայլ գագաթները։ Բայց մեր հարևանությունը Արագածի հետ միայն նրա գագաթներին նայելով չէր վերջանում։ Լեռան վերնալանջերին ու սարահարթերում էին գտնվում մեր արտերը։ Դարուփոս, ծուռումուռ, տձև ու անշնորհք կարկատանների նման փռվել էին դրանք այնքան մոտիկ հավերժական ձյան սահմանին, որ հնձի ժամանակ, երբ շոգը շատ էր նեղում, հնձվորներն իրենց միջի ջահելներին ուղարկում էին լեռան կիրճից ձյուն բերելու։

Մեր գյուղից ներքև էլ հողեր կային։ Ընդարձակ, կուպրի նման սև հողեր։ Բայց դրանք մերը չէին, այլ մեզանից ներքև գտնվող հարևանինը, որին մենք Ցածի գյուղ էինք ասում։

Ցածի գյուղացիք շատ լավ էին ապրում։ Տները՝ սրբատաշ քարից, տավար-ոչխարը՝ կուշտ ու կլորիկ, իրենք նույնպես կուշտ ու մի քիչ էլ՝ քթները ցից։ Դե, այդպես պիտի լիներ, քանի որ նրանց արտերում ցորենը մարդաբոյ էր կանգնում, իսկ մերում՝ հնձվորը մեջքը երկտակ պիտի ծալեր, որպեսզի կարողանար հողից մի երկու թիզ հազիվ բարձրացած ցողունը կտրել։

Բայց դե, հնձվորը միշտ էլ հնձվոր էր, ուզում է Ցածի գյուղից լիներ, ուզում է՝ մեր։ Գերանդի էր քաշում, մեջք ու մկան ջարդում, ուրեմն՝ պիտի հանգստանար։ Իհարկե, հանգստանալու համար ամենից խելացին այն էր, որ արևմտոցի հետ նա գլուխը թաղեր հաշանի մեջ ու քներ, մինչև երկնքում նտպտար լուսաբացի առաջին ծիծեռնակը։ Իսկ եթե քնելուց առաջ էլ թանապուր էր ուտում, այլևս կասկած չկար, որ առավոտյան նա կարթնանար միանգամայն կազդուրված։

Ահա այսպիսի հրաշագործ կերակուր էր համարվում թանապուրը, և երեկոները երկու գյուղում էլ հնձվորի առջև թանապուր էին դնում։ Միայն թե ցածիգյուղացիք իրենց բաժինն ուտում էին մինչև կշտանալը, իսկ մերոնք՝ մինչև այն պահը, երբ Ցածի գյուղի կողմից փչում էր իրիկնային հովը... Այստեղ արդեն մերոնք փայտե գդալները վայր ... դնում, կավե չանախները հրում մի կողմ, հանում թութունի քսակներն ու դառը ծուխը կուլ տալով քրթմնջում.

— Ինչի՞ չէ, ջեհեզով թանապուր կուտեն...

— Տո՛, ինչու՞ միայն թանապուրը, նրանց տոլման ու փլավն էլ ջեհեզով են։

— Հալբա՛թ, աշխարհի ծովն ու ցամաքը տակներն են դրե՛լ...

Հասկանալի է, որ ցածիգյուղացիք ո՛չ ծով ունեին իրենց տակը դրած, ոչ էլ ցամաք։ Պարզապես նրանք բոստաններ ունեին, և նրանց տանտիրուհիները թանապուր եփելիս բոստանից քաղում էին ուզած կանաչին, զարդարում իրենց թանապուրն ու... իրիկնային հովի օգնությամբ բուրմունքն ուղարկում մեզ։

Ես դժվարանում եմ ասել, թե ինչպես էր պատահել, որ դուռը դռան վրա հարևաններից մեկը բոստաններ ուներ, մյուսը՝ ոչ, բայց ա՛յ, կասեմ մի ուրիշ բան։

«Ջեհեզով» թանապուրի առթիվ մերոնց դժգոհությունը երբեմն այնքան էր մեծանում, որ նրանք նույնիսկ վրեժ էին լուծում, այն էլ շատ հետաքրքիր ձևով։ Այսպես, օրինակ, այն վաղ ժամանակներում, երբ գյուղերում դեռ մեքենաներ չկային, կալ ու կուտի ամբողջ ծանրությունն ընկած էր լծկան անասունների վրա։ Եզները դաշտերից հաշան էին փոխադրում, հետո էլ կամին լծված ողջ օրը պտըտվում էին կալում, որպեսզի կալսեին։ Իսկ երեկոյան, երբ հաշանին ցող էր նստում և այլևս կալսել չէր լինի, լծկանն արձակում էին, ու պատանի տավա-

րածը քշում էր արոտի։ Եվ այդ պահերին էլ հայտըն-վում էին նրա խորհրդատուները և վատ թաքցրած խորամանկությամբ ասում.

— Աղա, էյ, տավարը շատ հեռու չքշես, էնտեղ՝ գյուղի տակին լավ արոտներ կան, տար կշտացրու...

Եվ տավարածը, որ սովորաբար աչքաբաց տղա էր լինում, տավարը քշում էր Ցածի գյուղի բոստանները։ Այս դեռ բոլորը չէ։ Երբեմն պատահում էր, որ տաք գլուխի մեկը սայլը լծում էր, թե՝ քաղաք եմ գնում... Ոչ ոք նրան չէր հարցնում, թե հունձ ու փունջի այս թեժ օրերին քաղաք գնալն ի՞նչ բան է։ Չէին հարցնում, քանի որ գիտեին՝ «քաղաքը» նույնպես Ցածի գյուղի բոստաններն էին, ուր պիտի մտներ հիշյալ սայլը, մի երկու պտույտ կատարեր, մարգերը տրորեր ու լուսադեմին վերադառնար, օգտվելով այն բանից, որ մեր հարևաններն էլ ցերեկվա աշխատանքից հոգնած, գիշերը խորն էին քնում...

Իսկ առավոտյան այնուամենայնիվ, նրանք էլ էին արթնանում, տեսնում էին գիշերվա ավերածությունն ու սայլի անվահետքերով գալիս կանգնում էին չարագործի դռանը։

— Բարի լույս, դրացի...

— Բարով տեսանք,—ուշացումով պատասխանում էր գիշերվա «հերոսը» և շարունակում իր գործը։

— Գիշերս, ախր էլի...

— Էլի ի՞նչ... Մուկն իրա գերդաստանով հարսանի՞ք է արել։

— Ձեռ ես առնում, հա՞... Տո, խի՞ղճ ունեցիր, խի՞ղճ։

— Փա՜հ, տեսեք ովքե՞ր են խղճից խոսում։ Ինչու՞, ձեզ նման ջեհեզով խաշ ու խաշլամա՞ եմ ուտում, որ խիղճս կորցնեմ,—ձայնը բարձրացնում էր սայլատերը, տեսնելով, որ արդեն մոտենում են իր քավորսանահեր, ազգ ու բարեկամները։ Բոստանատերերին էլ օգնության էին գալիս մինչ այդ կալերում մլուլ տվող համագյուղացիները, և վենը տաքանում էր։

— Ախր, էս ի՞նչ եք անում։

— Լա՛վ ենք անում...

— Ի՞նչ պատճառով, ա՛յ մարդիկ։

— Այն պատճառով, որ դուք «ջեհեզով» թանապուր եք ուտում, իսկ մեր կերածը քաշալ բան է։ Ձեր երեխեքը շահնշահի երեխեքի պես սաղ օրը փուրչուլուկ են խոթացնում, իսկ մերոնք դրա երեսն էլ տեսած չկան։

Նրանք իրար լեզվակոխ էին անում, իսկ մենք՝ երեխաներս, որ պատերի վրա թառած հետաքրքրությամբ լսում էինք, հենց որ գործը հասնում էր «փուրչուլուկին», ծոցներիցս հանում էինք հողոտ, կարմիր գազարն ու ախորժակով խոթացնում։ Տեսնում էին ցածիգյուղացիք մեր անամոթ արարքը, բայց լռում, քանի որ, եթե ձայն հանեին, հաջորդ գիշերը հենց միայն մեր հարձակումը բավական կլիներ, որպեսզի նրանց բոստաններում այլևս գազար չմնար։

Շարունակ կրկնվող այս վեճերը, չգիտեմ, ինչպես կվերջանային, եթե չպատահեր այսպիսի մի դեպք։

... Մի առավոտ արթնացան մերոնք ու սովորականի նման աշխատանքի գնալուց առաջ բարձրացան կտուրները, երևի տեսնելու, թե հերթական ավերածությունից հետո ինչպես էին իրենց զգում ցածիգյուղացիք։ Բայց ով առաջինն էր բարձրացել, կանչեց իր հարևանին, սա իր խնամուն, բարեկամին ու քիչ հետո բոլորը կտուրներին կանգնած նայում էին Ցածի գյուղի կողմը։

— Հը՞, հո հողաչափ չէ՞...

— Հա՛ մի, հա հողաչա՜փ։ Ցածի գյուղին այդքան խիղճ ո՞վ է տվել...

— Խղճի բան չէ, կարող է՝ օրենքի կողմից մարդ են ուղարկել, որ էս անարդարությունը վերացնի։

— Չէ՛, ջանըմ, ով գիտե, էլի ինչ դավ ու դավաճանություն են սարքում։ Դրանց ցածիգյուղացի կասեն։

Խոսեցին, վիճեցին, բայց չկարողացան պարզել, թե այդ ինչ մարդ էր երևացել մեր հարևանների բոստաններում ու դիմեցին մեր օգնությանը.

— Երեխե՛ք, մի...

Շարունակությունն արդեն հասկանալի էր, ու մեր տղաները խմբով թռան դեպի Ցածի գյուղ, այս անգամ տանելով նաև մեզ՝ աղջիկներիս։ Իհարկե, նրանք գնում էին, պարսատիկների մեջ քարեր դնելով, որպեսզի առիթի դեպքում առաջինը իրենք հարձակվեն։ Բայց կատարվեց մի զարմանալի բան։ Նրանց միջի ամենալավ կռվողը՝ դոդ-գլուխ Սեթոն,





բարձրացավ մի քարի ու մերոնց կանչեց.

— Տղե՜րք, վերջ տվեք, թե չէ՜…

— Թե չէ, ի՞նչ կանես,— աքլորացան մերոնք ու պարսատիկները ֆռֆռացրին։ Բայց դեռ չէին արձակել, երբ այն անծանոթը, որ երևացել էր նրանց բոստաններում, բարձրացավ Սեթոյի կողքն ու մեզ մոտ կանչեց։

— Կռվելը լավ բան չէ,— սկսեց նա, երբ մենք խմբով շրջապատել նրան ու սպասում էինք, թե վերջն ինչ է լինելու։— Եվ ոչ մի առիթ էլ չկա կռվելու։ Հարևաններ եք, չէ՞։

— Հարևա՜ն… Ի՞նչ հարևան,— փնթփնթաց մեր առաջնորդ Բագրատը։

— Այո՛, հարևաններ եք և շատ էլ սիրով,— ժպտաց այդ անծանոթն ու վրան թվեր ու խազեր նկարված երկար ձողափայտը խցկեց Բագրատի ձեռքը,— բռնի՛ր։

Մեր կտրիճ առաջնորդը ետ-ետ գնաց, բայց ձողափայտը բռնեց։ Ու տեսնելով, որ անծանոթը գոհունակ ժպտաց, Բագրատը վերջապես հարցրեց.

— Քեռի ջան, ասա, էլի, դու ո՞վ ես, ախր մենք քեզ համար ենք եկել…

— Այ, դա շատ լավ է, որ ինձ համար եք եկել,— ուրախացավ քեռին։— Ես էլ մենակ եկել ու մոլորվել էի, թե մինչև ընկերներիս տեղ հասնելն ինչ պիտի անեմ։ Ուրեմն՝ ինձ կօգնեք։ Իսկ ես երկաթուղին եմ…

… Չերկարացնեմ, մի ժամ էլ չէր անցել, երբ մենք ու մեր հակառակորդները եռանդով քննարկում էինք այն հարցը, թե Արագածի փեշին ծվարած այդ հեռավոր գյուղում, եթե գնացք նստենք, մինչև ու՞ր կհասնենք։ Դժվար, շատ դժվար հարց էր։ Բայց ավելի դժվարն այն էր, թե ամբողջ օրը քեռի երկաթուղու հետ հանդերը չափչփելուց հետո ի՞նչ պատասխան պիտի տայինք մեզ սպասողներին։ Այդ մասին բոլորս միասին էինք մտածում, բայց յուրաքանչյուրն առանձին էր պատկերացնում կաշվե փոկով դաղված իր թիկունքը։ Այո, այդպես էր լինելու՝ կվերադառնայինք տուն, ու մեր հայրերը կամ մեծ եղբայրները մռայլ գայրույթով կհրամայեին.

— Մոտ արի՛…— Եվ ինչքան էլ մեղա գայինք ու ու աղաչեինք, կաշեփոկը պիտի շրխկար,— հը՞, Ցածի գյուղում թրև գալը լա՞վ էր…

Բայց կատարվեց երկրորդ անսպասելին։ Մեր մեծերը, չսպասելով մեր վերադարձին, իրենք իջան Ցածի գյուղ։ Իսկ երրորդն արդեն ոչ թե անսպասելի դեպք էր, այլ հրաշքի նման մի բան։ Երեկոյան, երբ խավարն այնքան էր խտացել, որ աշխատել չէր լինի, մեր գյուղացիք հավաքվեցին, որպեսզի տուն վերադառնային, բայց ցածիգյուղացիք արգելեցին.

— Այ, մարդիկ, դե ուրեմն, եկեք միասին մի պատառ հաց կտրենք, նոր բարի ճամփա,— ասացին նրանք։

Մերոնք չեմ ու չում արեցին, տարակուսանքով շուրջները նայեցին, թութունի քսակները հանեցին ու գիջեցին։

Եվ այդ օրն առաջին անգամ մենք հարբեցինք ոչ թե նրանց թանապուրի բուրմունքով, այլ կերանք, այդ հրաշք թանապուրը։ Եվ արդեն դարձավ սովորություն, երկու գյուղի տղամարդիկ հաշտ ու համերաշխ աշխատում էին երկաթուղու կառուցման վրա ու երեկոները «ջեհեզով» թանապուր էին ուտում։

… Վաղուց են անցել այդ օրերը։ Ցածի գյուղն ու մեր գյուղը հիմա միացել են, դարձել բանվորական ավան, երկաթուղու կայարանում օր ու գիշեր սուլում են գնացքները։ Եվ եթե այդ պահին մի որևէ տատիկ թանապուր է եփում, շերեփը ձեռքին կլսի գնացքի սուլոցն ու կմրմնջա.

— Ջա՜ն-ջա՜ն, ձենդ անսպառ, որ եկար, դուռ ու դրացու հաշտեցրիր…

# ՊԱՂՊԱՂԱԿ

Ծ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Գ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

*Մայրիկն այդպես էլ ասաց.*

*—Մինչև օրերը կարգին չտաքանան, ոչ մի պաղպաղակ։ Նույնիսկ անունը չտաս։ Ի՞նչ ես գտել այդ պաղպաղակի մեջ՝ չեմ հասկանում։*

*Ա՜խ, այդ մայրիկն էլ...*

*Ի՞նչ կա չհասկանալու։ Այնքա՜ն վաղուց է Անահիտը վերջին անգամ պաղպաղակ կերել։*

*Այն ժամանակ ինքը նոր էր երկրորդ դասարան փոխադրվել, և բոլորովին ամառ էր։ Առավոտյան արթնանում էր թե չէ, չստերը ոտքերն էր գցում ու միանգամից տանից դուրս թռչում։*

*Ոչ ոք հեռվից չէր բղավում.*

*— Ո՞ւր ես այդպես մերկ վազում։*

*Իսկ հիմա՞...*

*Այս ինչ տեսակ ամառ է։ Անահիտը օրացույցից իմացել է, որ արդեն գարունը վերջանում է, իսկ մայրիկը լսել անգամ չի ուզում պաղպաղակի մասին։*

*— Հետո ի՞նչ անենք, որ ամառ է։ Նայիր երկինքին... Ինքդ էլ գը[illegible]ներ ունես։ Հենց այդպիսի մի բան է քեզ հարկավոր, որ հիվանդանաս...*

*Եվ ահա, մի քանի օր առաջ, Անահիտը դպրոցից եկավ ու մայրիկին խնդրեց.*

*— Ընկերուհիներով ուզում ենք կինո գնալ։ Կթողնե՞ս...*

*Մայրիկը թույլ տվեց։*

*Ամեն ինչ այնքան լավ էր։ Շատ ուրախ օր էր։ Կինոնկարը նայեցին, հետո միասին դուրս եկան։ Անահիտն ինքն էլ չիմացավ, թե ինչպես համաձայնվեց Լուսիկի առաջարկին.*

*— Եկեք կինոյից ավելացած փո-*



ղերով պաղպաղակ գնենք,—ասաց Լուսիկը։

— Ճիշտ է,—վրա բերեց Սեդան։

Պաղպաղակը գնեցին։

Սառը, դուրեկան ու համեղ պաղպաղակն ուտելիս, ազնիվ խոսք, Անահիտը ամեն ինչ մոռացել էր. և մայրիկի արցունքը, և իր կոկորդի գլանդները... Մի խոսքով ամեն, ամեն ինչ։

Այդ պահին նա միայն մի բան էր ցանկանում, որ այդ հաճույքը հնարավորին չափ երկարի...



* * *

Երրորդ օրն է՝ Անահիտը հիվանդ պառկած է։ Կոկորդը ցավում է, տաքություն ունի։ Նա հիմա ո՛չ խոսել է ցանկանում, ո՛չ ուտել։ Աշխարհում նույնիսկ ամենահամեղ բանը նրան անհամ ու դառն է թվում։

Չնայած դրան, մայրիկը նրան ստիպում է դառը դեղեր կուլ տալ։

Մի քանի օրում եղանակը փոխվել է։ Առավոտից երեկո կապույտ երկնքում սահում է պայծառ արևը։

Մայրիկը Ստեփանիկի համար պաղպաղակ է գնել։ Ստեփանիկը, որը դրսում խաղում էր, ուրախ-ուրախ մոտեցավ քրոջը և բացականչեց.

— Տե՛ս, Անահիտ, մայրիկը ինձ համար պաղպաղակ գնեց։

Անահիտը ոչինչ չպատասխանեց։ Նա միայն գլուխը շրջեց պատի կողմը, որ պաղպաղակը չտեսնի։

Հիմա նրան թվում էր, թե պաղպաղակն էլ է դառն ու անհամ։

## ԱՆՄԻՏ ԱՅԾԻԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

(Սկիզբը տես «Պիոներ» № 3, 4, 5, 6)



Հիմա էլ թև՜
Նավաստին բռնեց.
— Ե՛կ, մեր ուզածն էլ
Խոհարար է հենց։



Բայց, տեսե՛ք, ճաշը
Ի՜նչ բերեց գլխին.
Թնդանոթի մեջ
Անմիտին դրին։



Ու կրակոցը
Նույն պահին թնդաց.
Խեղճը երկնքից
Ծովը շրմփաց։



## ՊՂՊԵՂԸ

Ս. ԽԱՐԱԶՅԱՆ

Երբ տանը մարդ չի լինում,
Երբ գնում է մայրը դուրս,
Պահարանն է որոնում
Աչոտիկը սուս ու փուս։

Գտնում է նա չոր մրգեր,
Ուտում, ընկնում դես ու դեն,
Եվ աղմկում է նա դեռ.
Ծիծաղում է ժպտադեմ։

Մի օր կերավ չիր ու նուշ,
Խմեց մածնի մերանը,
Պղպեղ կերավ անզգույշ՝
Կրակն ընկավ բերանը։

Ու լաց եղավ նա այնքան,
Տան մեջ վազեց դես ու դեն,
Չէր աղմկում այս անգամ,
Չէր ծիծաղում ժպտադեմ։

Մեն-մենակ է նա կրկին,
Բայց այդ դեռ չի մոռանում
Եվ ատում է փիսիկին,
Երբ նա բան է գողանում։

## ՁԱՆՁՐԱԼԻ ՄԱՐԴԸ

Ռ. ԱՐԱՄՅԱՆ

Օպերայի այգում, նստարաններից մեկի մոտ, որտեղ նստած էր կիտելավոր մի մարդ, խաղում էին երեխաները։

— Գիտե՞ք ինչու փուչիկները վերև չեն բարձրանում,— հարցրեց տղաներից մեկը, և որովհետև ոչ ոք չհարցրեց ինչու և կամ թե չասաց՝ գիտեմ, ապա շարունակեց,— հորեղբայրս ասում է, որ եթե փուչիկները վերև բարձրանային, երեխաները փուչիկների հետ երկինք կգնային, և քաղաքը միանգամից ամենատխուր քաղաքը կդառնար, ու այգիներում էլ չէին աղմկի երեխաները։

— Եվ լավ կլիներ,— փնթփնթաց կիտելավոր մարդը։

Երեխաները զարմացած նայեցին նրան, որը չգիտես քնած էր, թե արթուն, ու շարունակեցին խաղալ։ Նախ՝ նստարանի մոտ կավիճով ինչ-որ բան նկարեցին, հետո խաղադաշտ գծեցին, և աղջիկներից մեկը ոտքը խփեց գետնին ու ասաց.

— Ես չեմ խաղում, լավ չեք գծել։

Ոչ ոք ուշադրություն չդարձրեց աղջկա վրա, իսկ նա ոտքը ավելի ամուր խփեց գետնին ու ասաց.

— Ա՛յ, ասում եմ չեմ խաղա։

Եվ երբ նորից ոչ ոք ուշադրություն չդարձրեց, նեղացած աղջիկը դժգոհ հեռացավ։

Հետո տղաներից մեկը ասաց, որ նա մեծ, շատ մեծ ձի ունի, ավելի մեծ, քան ավտոբուսը, և



Ջրից դուրս եկավ
Թրջված հավի պես,
Կուլ տված ջուրը
Թափեց ժամ ու կես։



Բայց, ա՜յ քեզ հրաշք,
Ի՜նչ կգի, ի՞նչ բան,
Նրա ոտքի տակ
Կետ է իսկական։



Հանկարծ ջրի մեջ
Սուզվեց կետ ձուկան,
Մեր Անմիտն էլ խեղճ
Նորից ջուրն ընկավ։



Նկ. Գ. ՄԱՀԱՅԱՆԻ

ամեն օր այդ ձին ուտում է երեք դեզ խոտ։

Կիտելավոր մարդը, որ մինչ այդ քնած էր թը-վում, աչքերը բաց արեց ու ասաց.

— Այդպիսի ձի չի լինի։

Երեխաները զարմացած նայեցին նրան, բայց որովհետև նա անմիջապես փակեց աչքերը, շարունակեցին խաղալ, և նա, ով առաջինն էր սկսել խոսել, նորից ասաց.

— Հորեղբայրս ասում է...

— Ինչու՞ միշտ քո հորեղբայրն է ասում և ոչ թե հայրիկդ,— հարցրեց աղջիկներից մեկը։

Տղան, որ չէր սպասում այդպիսի հարցի, մի պահ շփոթվեց ու հետո պատասխանեց.

— Որովհետև հայրիկս պատերազմում զոհվել է... Հորեղբայրս ասում է, որ վերև բարձրացող փուչիկներ կբերի, փուչիկները կկապեմ զամբյուղից, զամբյուղում կնստեմ ու կբարձրանամ ամպերից էլ վեր, իսկ հետո փուչիկները մեկ-մեկ կպայթեցնեմ ու վայր կիջնեմ։

— Այդպիսի բան չի լինի,— աչքերն առանց բացելու փնթփնթաց կիտելավոր մարդը։

Եվ որպեսզի այդ կիտելավոր մարդը հավատա, որ այդպիսի բան կարող է լինել, երեխաները հավաքվեցին իրար գլխի, փսփսացին ու որոշեցին ինքնաթիռ խաղալ։ Ձեռքերը լայն պարզած, նրանք սկսեցին սավառնել, զռռացնելով սլանալ ետ ու առաջ։

Կիտելավոր մարդը փակել էր աչքերը, և նա չտեսավ, թե ինչպես առանց հողից կտրվելու, ամպերի վրայով սլացան երեխաները, ինչպես բարձրացան վեր ու ճախրեցին երկնքի կապույտում...



Մթնեց օրն հանկարծ,
Թուխ ա՞մպը պատեց,
Ո՛չ, թևատարած
Լեռ-թռչի՞նն էր հենց։



Հսկա վագրի պես
Նա վրա պրծավ,
Այծիկին ճանկեց
Ու վեր բարձրացավ։



Տարավ ու հանեց
Լուսնյակի վրա,
Կտուցը լարեց,
Որ ծակի նրան...

## ԽԱՏՈՒՏԻԿ

Է. ԱՎԱԳՅԱՆ

Փոքրիկ. սիրուն իմ խատուտիկ.
Քո սերմերը պարաշուտիկ
Թռան անցան գետ ու առու,
Սավառնեցին հեռու՜, հեռու՜,
Ու փռվելով արճակ դաշտում,
Խոր քուն մտան հողի գրկում։
Երբ որ դաշտը մեր կանաչի,
Ձինջ առվակը երբ կարկաչի.
Երբ որ արևն ուրախ ժպտա.
Ծիլ ու ծաղկին նոր կյանք կտա,
Ու կծնվեն դաշտում մոտիկ
Հազա՜ր. հազա՜ր նոր խատուտիկ...

## ՄԵԿ ՏԱՐԵԿԱՆ ԱՇՈՏԸ

ԳՐ. ԵՂԻԿՅԱՆ

*Տեսե՛ք, ոնց է մեծացել,*
*Մեր թիզ ու կես Աշոտը,*
*Կլորացել, գիրացել*
*Ինչպես արջի քոթոթը։*

*Թոթովում է, բլբլում,*
*Բառեր ասում իրենից,*
*Այնպես հաֆ-հաֆ է անում,*
*Փիսոն փախչում է տանից։*



Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ



Բայց մեկ էլ հանկարծ,
Տեսե՛ք, ի՞նչ եղավ.
Մեկը թուր պարզած
Օգնության եկավ.



Ճչաց. «Շլինքդ
Կկտրե՛մ, հրե՛շ»...
Բայց Լեռ-թռչնիկը
Հեռու՜ էր թռել.



Բարևեց այծին,
Ասաց. «Բարեկամ,
Մեր Լեռաստանում
Ի՞նչ կա, ի՞նչ չկա»

# ԵՍ ԷԼ ԵՄ ՉԷ՞ ԱՇԽԱՏՈՒՄ

*ՄՈՒԹ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Ո՞վ է ասում՝ ես խաղում եմ,
Սա իսկական տուն է. տու՜ն.
Ճաշ եմ եփում, մի քիչ հում է,
Տեսե՛ք, ես էլ չեմ ուտում։

Ափսեները՝ մաքուր, փայլուն,
Ապա ինչպե՞ս կլինի.
Այսօր ինձ մոտ հյուր են գալու
Տիկնիկներն իմ սիրելի։

Դուր չի գալիս տան ծևը ինձ,
Սենյակն այս ի՞նչ է դառել.
Շատ դժվար է փոխել նորից,
Բայց պիտի լավ զարդարել...

Կախարանը միջանցքում է.
Կախեք գլխարկ, վերարկու։
Այսպես. գործերն ավարտում եմ
Արագ-արագ՝ մե՛կ-երկու՛...

Դուք չկարծեք ես խաղում եմ.
Սա իսկական տուն է. տո՜ւն...
Եփում. թափում. լվանում եմ.
Ես էլ եմ չէ՞ աշխատում...



Նկ. Հ. ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ



Պատմեց մեզ այծը
Մոտ հարյուր արկած,
Պանի բերանը
Մնացել էր բաց



Պանն ասաց այծին.
— Թե պիտի մեկնես
Պոչավոր աստղին
Հիմա կհեծնես



Ջանցած մի վայրկյան
Իջավ աստղը ցած.
Բարձրացավ վրան
Այծն ուրախացած։

# ՊՈՉԱՎՈՐ ՋԱՄԲՅՈՒՂԸ

Խ. ՀՐԱՉՅԱՆ

— Ինչպե՞ս թե՝ պոչավոր զամբյուղ։ Զամբյուղը՝ լավ, իսկ պո՞չն ինչ գործ ունի այստեղ.— արհամարհանքով հարցրեց Կուռկուռը։

Դա խիստ ուսյալ մի հնդկահավ էր և հըրաշքների չէր հավատում։ Բակի բոլոր բադերն ու հավերը. անգամ հպարտ աքաղաղը. քաշվում էին նրանից։ Այո. նշանավո՜ր հնդկահավ էր այդ Կուռկուռը։

Եվ այսպես. նա արհամարհանքով հարցրեց.

— Զամբյուղը՝ լավ. իսկ պո՞չն ինչ գործ ունի այստեղ։

Ճիշտ որ. ի՞նչ գործ ունի պոչը։ Բոլորը հարցական նայում էին սպիտակ վառեկին. իսկ սա չգիտեր ամոթից ուր կորչի։ Բայց ախր տեսավ. իր աչքով տեսավ. թե ինչպես էր զամբյուղի տակից դուրս ընկել մի ահագին բրդոտ պոչ։ Զամբյուղը բերնի վրա շուռ էր եկել խոտերին. իսկ պոչը կամացուկ դեպ ու դեն էր շարժվում։

— Աչքին է երևացել.— նկատեց չալպըտուրիկ հավը։

— Վախկոտի մե՜կն է.— ծոր տվեց կարմրատոտիկ բադիկը։

— Վառ-ռուռե՜կ.— եզրափակեց Կուռկուռը։



Բոլորը համամիտ էին նրան. իսկապես, որ ընդամենը մի խեղճ վառեկ էր։

Սկսում էին ցրվել. երբ պարտեզի դռան մեջ երևաց...մի զամբյուղ՝ պոչն էլ ետևից քաշ-քաշ. ճիշտ ու ճիշտ վառեկի ասածի պես։ Բայց այդ ոչինչ. մի՞թե աշխարհում



Նա երեք տարի
Ոսկի խոտ կերավ.
Մինչև հայրենի
Վարշավան տեսավ։



Բայց այստեղ էլ. ա՜խ,
Բախտը չբանեց.
Աստղի հետ ընկավ
Նա Վիսլայի մեջ։



Ճչում էր վախից
Ջրերի մեջ հորդ.
— Օգնեցե՜ք, վա՜յ ինձ,
Ես ա՞յծ եմ, թե՞ գորտ։

(Շարունակելի)



Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

քիչ բաներ են պատահում, հակառակ ուսյալ Կուռկուռի թերահավատության։ Ամենազարմանալին այն էր, որ պոչավոր զամբյուղը քայլում էր։

Բոլորը շփոթված քարացան տեղներում։

Զամբյուղը կամացուկ ներս մտավ բակ և շարժվեց ուղիղ դեպի ուսյալ Կուռկուռը, որը հրաշքների չէր հավատում։

Երկյուղը համակեց հավերին և բադերին, մինչև իսկ աքաղաղը մի տեսակ վատ ըզգաց իրեն։

Առաջինը փախուստի դիմեց չալպտուրիկ հավիկը, նրան հետևեց կարմրատոտիկ բադիկը, ապա խուճապ ակսվեց։ Աքաղաղը, որ մի րոպե տատանվում էր,—փախչե՞լ, թե մնալ Կուռկուռի մոտ,—միացավ մյուսներին, և շուտով Կուռկուռը մնաց «մենակ» վտանգի դեմ-հանդիման։

Նա զայրույթից կարմրեց։ Փոքրոգի վախկոտներ։ Հիմի նա ցույց կտա, թե ի՞նչ ասել է քաջություն։ Փախչել ինչ-որ պոչավոր զամբյուղի՞ց... Մինչև իսկ ծիծաղելի է։

— Կու՛ռ-կու՛ռ, կու՛ռ-կու՛ռ,— քրքջաց նա։

Հանկարծ զամբյուղը, որ մինչ այդ բոլորովին մոտեցել էր նրան, առաջ նետվեց, դիպավ Կուռկուռի կրծքին ու գլորվեց մի կողմի վրա...

Զամբյուղի տակից դուրս պրծավ Քոթոթը և կատաղի հաչոցով ու կլանչոցով նետվեց դեպի իր բույնը։ Կուռկուռը ծղրտաց ու մեջքի վրա շրմփաց առվի մեջ, բայց իսկույն էլ ոտքի ելավ և սկսեց ֆսֆսացնելով պտտվել տեղում։

Ա՛խ, այդ շան լակոտը... Միշտ մի օյին պիտի սարքի։

Քաջիկը փորը բռնած ծիծաղում էր պատշգամբում։

— Մայրի՛կ, մայրի՛կ, մի արի տես, թե Քոթոթս ո՞նց լեղաճաք արեց քո Կուռկուռին։

## ՍԱՌՆԱՐԱՆ

*Մ. ՔԱՐՅԱՆ*

— Եկե՛ք, եկե՛ք, երեխաներ,—
Կանչեց հանկարծ մեզ Արան,—
Տեսեք մայրս ինչ է գնել՝
Մի գեղեցիկ պահարան։

— Ո՛չ, բալիկներ,— ասաց մայրը,—
Ճիշտ չի ասում ձեզ Արան.
Սա մթերք է պահում սառը
Եվ կոչվում է սառնարան։

Դուք սրա մեջ, թե որ պահեք
Երշիկ ու յուղ, կաթ ու միս,
Չեն փչանա նրանք երբեք,
Թեկուզ մնան մեկ ամիս.

# ՊԱՏՄՎԱԾՔ ԵՐԿԱԹԵ ԴԱՐԲԱՍՈՎ ԲԱԿԻ, ԽԱՐՏՅԱՇ ԱՂՋԿԱ ԵՎ ԻՍԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Երրորդ հարկի պատշգամբում փռված սպիտակեղենների արանքից դուրս ցցվեց կլորիկ մի գլուխ։ Նրա մանրիկ աչքերը խլվլացին ակնոցի ապակիների միջից, ապա մեխվեցին բակում հավաքված երեխաների վրա։

Երկաթե դարբասով բակում ասեղ գցելու տեղ չկար։ Անջուր ավազանի կենտրոնում կանգնեցված բարձր երկաթաձողի վրայով, հանդիսավոր վեր բարձրացավ ճամբարի դրոշակը։

Քիչ անց խարույկի թեժ բոցը բրոնզագույն փայլով ողողեց ամբողջ բակը։

Խարտյաշ հյուսքերով թխլուկ մի աղջիկ և ջութակը ձեռքին մի տղա, ուրախ ժպտալով եկան ու կանգնեցին բոցավառվող խարույկի առջև։

Իսկ ո՞վ էր ակնոցավոր այն հաստլիկ տղան, որ երրորդ հարկի պատշգամբից նախանձով նայում էր նրանց...

* * *

Երկաթե դարբասով բակում ապրում է Վովա անունով մի տղա։

Տարիներ առաջ, չարաբաստիկ մի օր, երբ նրա յոթը տարին դեռ նոր էր լրացել, հուզված ներս ընկավ մայրը և, ուղղակի, գոռաց ամուսնու դեմքին։

— Վարպետ Արշակի հողը մեր գլխին։ Նա իր Ռուբիկին երաժշտական դպրոց է ընդունել տվել, իսկ մեր Վովչկան... օ՜յ, ես քիչ է մնում պայթեմ։

Եվ նա տաքացած սկսեց գովել իր տղայի՝ ջութակահարին սազող նուրբ, ճկուն մատները ու վերջում ավելացրեց.

— Որոշված է։ Մեր Վովչկան պետք է ջութակահար դառնա...

Հենց այդ օրվանից սկսեց խճճվել Վովայի երաժիշտ դառնալու տառապանքների կծիկը, որի ծայրը նա մինչև այսօր էլ չի կարողանում գտնել։

Նա մեծ սիրով դեն կշպրտեր ջութակը, եթե նրա ականջներում շարունակ չհնչեին մոր խոսքերը. «Քո մատները ստեղծված են միայն ու միայն ջութակի համար. Վովչկա, դու պիտի անպայման երաժիշտ դառնաս»։

Եվ ահա Վովայի մեջ անբուժելի մի հիվանդություն սկսվեց։ Ավելի ճիշտ, այդ չարաբաստիկ հիվանդությունը ծայր առավ հենց նրա մատներից։

Բավական է մեկն ու մեկը փորձեր մի գործի դնել հաստլիկ Վովային, նա իսկույն սարսափով հեռու կփախչեր։

Մի անգամ ճամբարականներից մեկը խնդրեց նրան.

— Վովա, դու բռնիր փայտի ծայրից, իսկ ես կսղոցեմ։

— Այդ էր պակաս, — ծղրտաց Վովան։ — Ձեզ համար մատներս պետք է փչացնեմ, ինչ է։

Սղոցող տղան զզվանքով մի կողմ հրեց Վովային ու բարկացած ասաց.

— Որ էդպես է, իսկույն չքվիր էստեղից։ Քեզ նման փափկասունը մեզ բոլորովին էլ հարկավոր չի։

— Գա՞հ, և կչքվեմ։ Տեսնենք, ո՞վ պետք է նըվագի ձեր ճամբարի բացմանը։

— Ռուբիկը քեզանից ավելի լավ է նվագում, — ասաց տղաներից մեկը։

— Լա՞վ է նվագում... Իսկ նա հազիվ թե համաձայնվի բակում նվագել։ Իսկական երաժիշտը դահլիճներում է նվագում։



— Կո՛րիր, յուպա։ Եթե նրա ուսն էլ պես չլինիր...

Մի քանի օր առաջ, բակային ճամբարի դրոշի համար բերված երկաթաձողը բարձրացնելիս՝ ընկել էր Ռուբիկի ուսին ու սաստիկ ցավեցրել։

Հիմա Ռուբիկը պառկած էր տանը, իսկ ճամբարականները իրար էին խառնվել։

— Ի՞նչ անենք, տղաներ... Ի՞նչ անենք, հը՞,— հուսահատ հարցնում էր խարտյաշ մազերով աղջիկը։ — Ստիպված ենք Վոլյային կանչել...

— Ավելի լավ է, առանց ջութակի յոլա գնանք, քան թե նրան խնդրենք։

— Մեկ է, չի գա,— ավելացրեց մի ուրիշը,— խոզությունը կբռնի, ու չի գա։

— Ճիշտ չեք, տղաներ։ Ինձ թվում է, նա կըհասկանա, որ դա մեր ամբողջ բակի պատվի հարցն է, ու կգա։ — Ասաց խարտյաշ աղջիկը, գլխի կարուկ շարժումով հյուսքերը ետ գցեց ու սլացավ երրորդ հարկ։

— Վոլյա, շնչասպառ ներս ընկավ նա,— շո՛ւտ արա։ Բոլորը հավաքվել են... Հարևան բակերից էլ են եկել։ Համերգը հիմա կսկսվի... քեզ են սպասում։

— Իզուր էլ սպասում են,— վիրավորված քիթը վեր քաշեց Վոլյան։

— Դե լավ է՛։ Կատակ անելու ժամանակ չի, շուտ վերցրու ջութակդ, գնանք։

— Չեմ գալիս։ Ես ձեզ համար փողոցային երաժիշտ չեմ։ Ես ջութակահար եմ և խալտուրայով չեմ զբաղվում։

— Վոլյա...

— Ո՛չ մի Վոլյա։ Դու ավելի՛ լավ է Ռուբիկին խնդրիր։ Նա ձեր գովական ընկերն է...

Աղջկան թվաց, թե մի ուժգին ապտակ հասցրին իր դեմքին։ Նա սեղմեց շրթունքները ու դուրս նետվեց սենյակից։

— Ջեմմա, կանգնիր,— հանկարծ սթափվելով սկսեց կանչել Վոլյան,— կգա՛մ, կնվագե՛մ... Ամբողջ գիշերը կնվագեմ, միայն թե կանգնի՛ր, լսո՞ւմ ես...

Բայց խարտյաշ հյուսքերով աղջիկը կարծես ոչինչ չէր լսում։ Շքամուտքի ոլորապտույտ բազրիքից բռնած՝ նա սլանում էր ներքև, առանց ետ նայելու։

* * *

Երկաթե դարբասով բակի սաղարթախիտ ծառերի տակ ալիքվում էին ջութակի մեղմիկ հնչյունները, որոնք թրթռալով, ասես իջնում, հալվում էին բակի կենտրոնում բոցկլտացող խարույկի մեջ։

Ուսի ցավից մերթ ընդ մերթ կծկվում էր Ռուբիկի դեմքը, բայց նվագը նա չէր դադարեցնում։ Այնքան դյութիչ էր ջութակի քաղցր ձայնը, որ մարդիկ ցած էին թեքվել շենքի պատուհաններից ու հմայված լսում էին։

Նվագում էր տղան։ Երգում էր նրա կողքին կանգնած խարտյաշ հյուսքերով աղջիկը։ Նրա «Փոքրիկ լրագրավաճառի երգը» կախարդել էր բոլորին։

Դեռ չէին դադարել երգի քաղցր ելևէջները, երբ բակի չորս կողմից հնչող ծափերի որոտը սթափեցրեց երրորդ հարկի պատշգամբում կանգնած Վոլյային, որը քիչ էր մնում իրեն ցած նետի այնտեղից։ Բայց նա, իհարկե, ցած չնետվեց։ Դրա փոխարեն հաստատուն մի վճիռ կայացնելով մտքում, արագ ներս մտավ, պահարանից հանեց բալի մուրաբայով լի աման և մեծ զայրույթով սկսեց ուտել։

Այն Վոլյան, որ մայրիկի բազմաթիվ թախանձանքներից հետո, ընդամենը հազիվ երկու թեյի գդալ մուրաբա էր ուտում, այժմ մեծ գդալով կուլ էր տալիս մուրաբան՝ դեմքը շարունակ ջղաձգելով։

— Այդ ի՞նչ ես անում, Վոլյկա։ Խելագարվե՞լ ես, ինչ է... ստամոքսի հիվանդություն կստանաս։

— Թող ստանա՛մ, թող մեռնե՛մ... Մեկ է, ոչ մի բանի պետք չեմ գալիս,— բարակիկ ձայնով ծղրտաց Վոլյան ու վազեց բակ՝ երեխաների մոտ։







## ԿԵՆԴԱՆԱԲԱՆԱԿԱՆ ԱՅԳՈՒՄ

Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Անտառի արքան մի ոչխար տեսավ,
Մռնչաց ահեղ ու վրա հասավ,
Ոստնեց ուժով մեկ՝ աչքը դմակին,
Բայց մեկ էլ՝ շրը՛խկ. դիպավ վանդակին։
Դիմացից փիղը կուշտ-կուշտ ծիծաղեց.
Հետո ծանրորեն կնճիթը կախեց.
— Հո անտառը չի՛, որ տաս ոտնատակ.
Մեծազոր արքա, վանդակ է, վանդա՜կ...
Այդ պահին հանկարծ ճստաց մի ծիտիկ.
— Ծի՜վ, ծի՜վ, սոված եմ, տվեք ինձ հատիկ.
Ես չեմ մոռանա ինձ կեր տվողին,
Երգ կասեմ անվերջ՝ թառած այս ճյուղին։ —
Իր ավազանից, երբ տեսավ ծտին,
Երախը բացեց Նեղոսի որդին,
Բայց բրդոտն իսկույն վրան մրթմրթաց
Ու ծտին պարզեց մի բուռ թթու տանձ։



Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ





# ԱՇԻԿՆ ՈՒ ՄԱՇԻԿԸ

ԳԱՐԵԳԻՆ ԲԵՍ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## 1

Նրանք հարևաններ էին՝ Սերոբն ու Քերոբը։

Դե, եթե Սերոբն ու Քերոբը հարևաններ էին, ասել է թե, հարևաններ էին նաև նրանց կանայք՝ Նինան ու Մինան։

Բայց այդ ի՞նչպես կարող է պատահել, որ ծնողները հարևաններ լինեն, իսկ նրանց երեխաները՝ ոչ։ Չի կարող պատահել։ Դրա համար էլ Աշիկն ու Մաշիկն էլ էին հարևաններ։

Եվ իրար կպած տներից մեկում Սերոբն ու Նինան էին ապրում՝ իրենց Աշիկի հետ, մյուսում էլ՝ Քերոբն ու Մինան էին ապրում, սրանք էլ իրենց Մաշիկի հետ։



Ու ինչքա՜ն լավ էին ապրում, ինչքա՜ն լավ, որովհետև մեր քաղաքում վատ հարևան գտնելն ավելի դժվար էր, քան ձմռան բուք ու բորանին մեր անտառներում մանուշակ գտնելը։

Այդպես էր մեր քաղաքում, սարերի վրա ընկած, աստղերի հետ միշտ խաղ բռնող մեր Շուշիում։ Կամ լավ հարևանություն արա, եղբոր պես եղիր հարևանիդ հետ, քրոջ պես եղիր, կամ ունեցած-չունեցածդ հավաքիր ու գնա քեզ համար ուրիշ տեղ ապրիր։

Այո՛, այսպես էր մեր քաղաքում։

Եվ շուշեցիք միշտ էլ ասում էին, թե հարևանություն ասած բանը՝ հենց Շուշուց է սկսվել։

Խաղաղ ու մարմանդ էր անցնում Սերոբի ու Քերոբի հարևանությունը։ Առավոտները, լույսը դեռ նոր բացված, նրանք դուրս էին գալիս իրենց տներից, բարի լույս ասում իրար, բարի լույս լսում ու իրենց խանութները գնում։ Արի տես, որ նրանց խանութներն էլ էին կպած իրար, գործով էլ էին նրանք հարևաններ. Սերոբի փոքրիկ դերձականոցի կողքին կարծես պպզել էր Քերոբի կոշկակարանոցը։

Նինան ու Մինան էլ իրար հետ էին անցկացնում օրը, միասին տան գործը տեսնում՝ լվացք անում, տուն մաքրում, ճաշ պատրաստում ու միասին էլ իրենց ամուսինների վերադարձին սպասում։

Աշիկն ու Մաշիկն էլ արևի հետ բակ էին դուրս գալիս և խաղում, հա՜ խաղում։ Արևն ուրախ նայում էր նրանց ու հանգիստ, անտարբեր լողում երկնքում։ Լողում էր, լողում, հանկարծ հիշում երեխաներին, նայում նրանց ու զարմանում, որ, ա՛յ ինքը հոգնել է, բեզարել, իսկ այդ Աշիկն ու Մաշիկը առաջվա պես դարձյալ իրենց խաղն են շարունակում։ Է՜հ, թող շարունակեն։ Եվ արևը աշխարհից ու մարդկանցից հավաքում էր իր շողերը, սարերի ետևն անցնում ու իր համար քուն մտնում։

Ահա այդ ժամանակ էլ, երբ մութը նաև նրանց բակում էր երևում, Աշիկն ու Մաշիկը աշխատանքից վերադարձող Սերոբի ու Քերոբի հետ իրենց տներն էին գնում։ Գնում էին տուն ու զարմանում, թե այդ ինչո՞ւ է միշտ այդպես մայր մտնող արևը նրանց բաժանում իրարից. թե ինչո՞ւ էին երեկոները Սերոբն ու Նինան Աշիկին իրենց մոտ տանում, իսկ Քերոբն ու Մինան էլ՝ Մաշիկին իրենց մոտ։ Մտածում էին, զարմանում ու այդպես մտածմունքն ու զարմանքը դեմքներին՝ քնում։



Առավոտյան նոր ծագող արևի ճառագայթները առաջինը էլի բակում իրար հետ խաղացող Աշիկին ու Մաշիկին էին տեսնում, որոնք այնքա՜ն հանգիստ էին, այնքա՜ն ուրախ, որ ասես աշխարհում նորից գիշեր չէր լինելու։

Այսպես էր հարևանությունը Շուշի քաղաքում, այսպես էին հարևանները, այսպես էին նաև Սերոբն ու Բերոբը, Նինան ու Մինան, Աշիկն ու Մաշիկը։

Բայց մեկ-մեկ, ի՞նչ արած, պատահում էր, որ...

2

Աշիկն ու Մաշիկը տնակ էին շինում բակում, շինում էին ու հետո էլ աղավնիների պես ղուն-ղունում։

Հանկարծ Աշիկը թե.

— Մաշիկ, դու չես կարողանում, թող ես շինեմ։

Մաշիկն էլ թե.

— Էդ ես չեմ կարողանո՞ւմ։ Ես պիտի շինեմ։

Աշիկը թե՝ ես, Մաշիկն էլ թե՝ ես։

Անմեղ երեխաներ ու անմեղ խոսքեր։

Խոսքերից հետո բանը կռվի էլ հասավ։ Հա՛։ Երեխաներն սկսեցին կռվել։ Կռվեցին, իրար վրա գոռգոռացին, սա նրան գեսը քաշեց, նա սրան՝ դենը, կիսաշեն հողե տունը քանդեցին ու հետո էլ իրար ծեծեցին, իրար վրա քար շպրտեցին։ Հայհոյել որ իմանային, ով գիտի, գուցե իրար հայհոյեին էլ։

Ի՞նչ անենք. երեխաներ ու երեխաների կռիվ. ինչպես սկսել էր, այնպես էլ կվերջանար։

Բայց ոչ. կռիվը Աշիկից ու Մաշիկից՝ Նինային ու Մինային էլ անցավ։ Ու ոչ Նինան մտածեց, թե ինչը ինչից էր, ոչ Մինան։ Ոչ Մինան մտածեց Աշիկին ու Մաշիկին հաշտեցնել, ոչ Նինան։

Ու Նինան Մինային կպավ, Մինան էլ Նինային։ Սա նրան մեկ ասաց, նա սրան՝ հազար ու մեկ։

Երեկոյան, երբ աշխատանքից տուն վերադարձան Սերոբն ու Բերոբը, հարևանների միջև անանցանելի մի սար էր իջել արդեն։

Սերոբն անցավ ներս, իսկ սենյակում նրան դիմավորեց Նինան։

— Տե՛ս, այ մարդ, էդ էլ քո հարևանները,— ասաց նա, ցույց տալով գլուխը թեթև քերծված Աշիկին։

Սերոբը նայեց վիրավոր որդուն, աչքերը սևացան, ու սենյակից դուրս գալով, մեջքով դեպի Բերոբի տունը կանգնեց։

— Ա՛յ ժողովուրդ, տեսա՞ք, թե մարդիկ օրը ցերեկով ինչ արին երեխիս,— դիմեց նա, ինքն էլ չիմանալով, թե ում։— Բա սա շուշեցու արարմու՞նք է։ Չէ՛, դատի բան է էս գործը, ես դա առանց դատի չեմ թողնի։

Ճպրտված քարը ոչ միայն քերծել, այլև քիչ արյուն էր հանել Մաշիկի ոտքից։ Քիչ, շատ քիչ։

Ներս մտնող Բերոբին տեսնելով, Մինան ձեռքերը ծնկներին խփեց ու ցույց տվեց արնաթաթախ բամբակը։

— Հարևաններդ տներս քանդեցին,— լացակումած դիմեց նա ամուսնուն։

Բերոբը նայեց որդուն, նրա վիրավոր ոտին, վերցրեց գետնին ընկած բամբակի կտորը ու բակ դուրս եկավ։

— Ա՜ խալխ, էստեղ նայեք, էս արյան ծովին նայեք,— խոսեց նա, սա էլ չիմանալով, թե դեպի ում պարզելով արյունոտ բամբակը։— Չէ՛, ես էս արյունը արյունով կմաքրեմ ու առանց դատի-դատաստանի չեմ թողնի էս բանը։

Եվ երկու հարևաններ, Սերոբն ու Քերոբը մեջքով դեպի իրար կանգնած, իրարից արդեն խռով, մտով սաստում էին ասես իրար ու հետն էլ ամեն մեկն իր համար կրկնում.

— Չէ, սա դատի գործ է, ա՛յ ժողովուրդ, դատի գործ։

Դռների շեմքին, իրենց մարդկանց թիկունքին կանգնած, իրար էին նայում Նինան ու Մինան և իրար չանչում, չանչում այնպես՝ ասես հազար տարվա թշնամիներ լինեին։

Իսկ երեխաները, Աշիկն ու Մաշիկը, որ առաջացրել էին այդ կռիվը, հոգնած պառկել էին իրենց թախտերին և մուշ-մուշ քուն մտել։

3

Առավոտյան, Աշիկին շալակն առած, Սերոբը դուրս եկավ տնից ու դեպի քաղաքային դատարանը շարժվեց։ Ծուռումուռ փողոցի մայթն ընկած, գլուխը կապած երեխան շալակին, նա քայլում էր առաջ ու մերթ-մերթ քթի տակ փնթփրթում.

— Գործս թողած ու՞ր եմ գնում։ Դե հիմի տեսնենք, թե փիս մարդը ի՞նչ կասի դատարանում։

Հենց նույն ժամին, փողոցի մյուս մայթով, ոտքը կապած Մաշիկին շալակն առած ու Սերոբին հավասար, անցնում էր Քերոբը և ժամանակ առ ժամանակ ինքն իրեն խոսում.



— Դատավորը, դատավորը կորոշի արդարն ու մեղավորը։

Նեղ փողոցի մայթերով դեպի դատարան էին քայլում նախկին հարևանները, ու մեկ այս մայթից էր լսվում Սերոբի ձայնը, մեկ այն մայթից՝ Քերոբինը։

Գլուխը կախ Սերոբին հանկարծ բարկացնել սկսեց մեջքին անընդհատ շարժվող երեխան։

— Աշի՛կ, մեջի վրա ես նստա՞ծ, հանգիստ կաց,— բարձրացրեց ձայնը նա։

— Ա՛յ Մաշիկ, ի՞նչ ես անում,— համարյա գոռաց Քերոբը։

Ու էլի առաջվա պես մեկն այս մայթով, մյուսը՝ այն, մեկն Աշիկին շալակած, մյուսն՝ Մաշիկին, շարունակում էին իրենց ճանապարհը Սերոբն ու Քերոբը։ Մեկ այս մայթից էր լսվում Սերոբի ձայնը, մեկ այն մայթից՝ Քերոբինը.

— Էս մարդ Շուշի քաղաքում իր օրում էսպիսի հարևանություն տեսած կա՞։

— Դատավորը, դատավորը կասի, թե ոնց պիտի լինի հարևանությունը։

Նրանց ջղայնությունը քիչ էր ասես, երեխաներն էլ մյուս կողմից էին կարծես խաղում նրանց հոգու հետ։

Վերջապես Սերոբը չհամբերեց, կանգ առավ, գլուխը բարձրացրեց ու.

— Ա՛յ Աշիկ, բավական չի՞ քեզ, ի՞նչ ես բուլղի կորել,— ասաց նա ու զարմացած նայեց ձեռքերը օդի մեջ խաղացնող որդուն։

Երբ Քերոբի համբերությունը սպառվեց, նա մեխվեց տեղում ու վեր նայեց։

— Ա՛յ տղա, հանգիստ է՛,— ասաց նա ու զարմացած նայեց ձեռքերը նույնպես խաղացնող որդուն։

Եվ ինչ տեսնեն նրանք, որ լավ լինի. մայթից մայթ, Աշիկն իր բերծված գլուխը մոռացած, Մաշիկն էլ իր վիրավոր ոտը, ձեռքերով իրար հետ բլբլացնում էին, հա բլբլացնում։

Սերոբը շալակից վայր դրեց երեխային։

— Էդ ո՞նց թե,— խոսեց նա,— քո պատճառով ես դատարան եմ գնում, իսկ դու մեջքիս նստած, թշնամուդ հետ խաղ ես անու՞մ։

— Ա՛յ տղա,— ասաց Քերոբը գետնին դնելով Մաշիկին,— ինձ դատարան ես տանում, իսկ դու էն խոխի հետ ծիծաղու՞մ ես։

Բայց ոչ Աշիկը լսեց Սերոբին, ոչ էլ Մաշիկը՝ Քերոբին։ Նրանք իրար մոտ վազեցին ու իրար գիրկ ընկան։

Այս մայթից Սերոբը նայեց Քերոբին, այն մայ-

թից Քերոբը՝ Սերոբին։ Նայեցին, նայեցին ու ժպտացին։

— Բարի լույս, Քերո՛բ,— ասաց Սերոբը։

— Բարի լույս, Սերո՛բ,— պատասխանեց Քերոբը։

Նրանք էլ թողեցին մայթերը և մոտեցան իրար։

— Հայդա՛, գնացեք տուն, խանութից ուշանում ենք,— երեխաներին նայելով ձայնը բարձրացրեց Սերոբը։— Սրանց տեսեք, մեզ դատարանի ճամփան են ցույց տալիս, իսկ իրենք բարբջում են իրար հետ։

— Ձեզ հետ չե՞նք,— գոռաց Քերոբը։— Դուք որ դատարանում գործ չունենք, մենք չունենք ու չունենք։ Հայդա՛։

Եվ Սերոբն ու Քերոբը, մի մայթ ընկած, դեպի խանութները շարժվեցին։

Նրանք, ով գիտի, դեռ տեղ չէին հասել, երբ բակում իրենց հաշտ ու խաղաղ խաղն էին սկսել Աշիկն ու Մաշիկը։

Նինան ու Մինան նայում էին իրար, Աշիկին ու Մաշիկին և ուրախ ժպտում։

Ժպտում էր նաև գեղեցիկ Շուշու վրա իր վառ շողերը փռած արևը, մեր արևը։

## ԾԱՂԻԿՆԵՐ

*ԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ*

Կարմիր, կարմիր կակաչներ
Ու սուսամբներ ձյունաթույր,
Դուք, մայիսյան դստրիկներ,
Զարդարեցեք ամենուր։

Թող ծաղիկներ շատ լինեն,
Ծաղկահանդես թող բացվի.
Ամենուրեք, ամեն տուն
Ծաղկի բույրով թող լցվի։

Ծաղկանց միջով թող քայլեն
Մանուկները մեր անգին,
Ու նրանցից սովորեն՝
Անուշ բույր տալ ամենքին։





# Հակայի ջութակը

Մ. ՇՏԻՏԵԼՄԱՆ

Դա շատ վաղուց էր: Տանտիրոջ թմփլիկ աղջիկը վազեց բակ:

— Տե՛ս,— կանչեց ՛նա.— տե՛ս. ես նոր տիկնիկ ունեմ:—Եվ դուրս ցցելով ներքին շրթունքը ավելացրեց,—ամենաթանկն է. հայրիկս է գնել...

Կարմրաթուշ տիկնիկը. ժանյակից կարված զգեստով. պառկած էր նրա ձեռքերի վրա և սառն, ապակյա աչքերով նայում էր ինձ:

— Լավ տիկնիկ է.— ասացի ես հոգոց հանելով.— տուր տեսնեմ:

Աղջիկը հոնքերը կիտեց.

— Ո՛չ, ձեռք չտաս:

Շատ անգամ էի կանգնել խաղալիքների խանութի ցուցափեղկի առաջ, հիացել փոքրիկ պահարաններով, տիկնիկներով և արջուկներով... Որքա՜ն գեղեցիկ խաղալիքներ կային այնտեղ:

Ես էլ էի ուզում տիկնիկ ունենալ՝ ժանյակից կարված զգեստը հագին. շրջել հեծանիվով. ուտել անուշահոտ կարկանդակներ... Ես նստեցի պատըշգամբի աստիճանների վրա և արտասվեցի:

Դրանք դառնության և վրդովմունքի արցունքներ էին:

— Ինչու՞ ես լաց լինում, աչիկ.— մեկն ուրախ հարցրեց ինձ:—Ապա ինձ նայիր. ինչու՞ ես փքվել. դու տիկնի՞կ ես ուզում: Ես քեզ համա՛ր կգնեմ:

Ես չհավատացի. ինձ թվում էր, թե նա կատակ է անում ինձ հետ: Սակայն թիկնեղ. բարեհամբույր. գանգրահեր մարդը գլուխը թափահարեց. և նրա մազերը ոսկե տաշեղների նման պսպղացին արևից:

— Գնա՜նք:

Նրա անուն ազգանունը շատ երկար էր.—Աֆրիկան Անուֆրիի Պանասյուկ: ‹ Նրա անունը փոխեցի ու դարձրի՝ իմ Հակա:

— Դու կլինես իմ Հական: Լա՞վ:

— Լավ.—համաձայնվեց նա. թող լինեմ Հակադ:

Նա ինձ համար տիկնիկ գնեց: Ես եկա բակ և ցույց տվի մեր տանտիրոջ թմփլիկ աղջկան:

— Ես էլ տիկնիկ ունեմ:

— Ստում ես. ուրիշինն է:

— Ո՛չ, իմն է:

— Տուր տեսնեմ,— նախանձելով խնդրեց նա:

— Ո՛չ.—ասացի ես ծիծաղելով.—ոչ. ձեռք չտաս:

Տիկնի՜կ... դա Հակայի առաջին նվերն էր, առաջին գուրգուրանքը: Նա էլ է ունեցել որբ մանկություն և այնպես լա՜վ էր հասկանում մանկական վիշտը:

* * *

Հական հաճախ էր գալիս ինձ մոտ: Կեսօրին ես դուրս էի վազում փողոց և նայում անցորդներին: Նկատելով ծանոթ վերնաշապիկը՝ ես կանչում էի:

— Հակա, ի՛մ Հակա...

Նա խնդույն մոտենում էր ինձ և հյուրասիրում կոնֆետներով, երբեմն էլ՝ խաղալիքներով կամ կարկանդակներով:

Մի անգամ ես հարցրի նրան.

— Ասա՛, դու ունեցե՞լ ես աղջիկ, այնպիսին, ինչպիսին ես եմ:

— Ոչ, փոքրիկս,—պատասխանեց Հական,—ես աղջիկ չեմ ունեցել: Բայց ես ունեցել եմ տխուր մանկություն:

Նա իր ձեռքի տաք ափով շոյեց իմ գանգրահեր գլուխը և ասաց.

— Ուզու՞մ ես ինձ մոտ հյուր գալ:

— Հյու՞ր գալ:

— Այո, կտեսնես, թե ինչպես եմ ես ապրում:

Եվ ահա ես էլ, առաջին անգամ իմ կյանքում, հյուր գնացի: Հական ինձ նստեցրեց աթոռի վրա: Նա ինձ ամանով լի կարմիր, հյութալի պտուղներ տվեց: Ես անգամ չգիտեի, թե նրանք ինչպես են կոչվում:

— Կե՛ր,—ասաց նա,—կե՛ր: Իսկ ես քեզ կզվարճացնեմ:

Նա մոտեցավ իր անկողնուն, վերմակի տակից հանեց փոքրիկ, գույնը գցած մի ջութակ, բացեց պատուհանը և տխուր նայեց երկնքին:

Լռեց երկար, ապա հարցրեց ինձ.

— Ի՞նչ նվագեմ քեզ համար: Ուշադիր լսիր: Ես կնվագեմ մոր երգը, որը կորցրել է իր երեխային:

Ջութակը թրթռաց նրա ձեռքում: Այդ երգը նման էր մեղմ տնքոցի, հեկեկանքի:

Նա նվագում էր և երգում: Ասես մի փոքրիկ դագաղ իջեցրին փոսը: Բահը զրնգաց, մեկը առաջին բուռ հողը գցեց գերեզմանի մեջ: Մայրն հեկեկալով ընկավ թարմ հողաթմբին: Նրա մազերը գզգզված էին: Նա այտով հպվել էր սառը, խոնավ հողին...

Ես հիշեցի մեր տունը, հիվանդ հորս, տանտիրոջ աղջկան, մեր կրած դառնագին վիրավորանքները... հիշեցի և լաց եղա...

— Հակա՛, մի՛ նվագիր... Պետք չէ.— խնդրեցի նրան:

Նա ցած դրեց ջութակը, մեղմորեն հարդարեց մազերը և ժպտաց.

— Ներիր, փոքրիկս: Ավելի՜ լավ է, ես քեզ համար կնվագեմ արշալույսը ողջունող աղջկա երգը: Եվ նվագեց...




Նկ. Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆԻ

... Թվաց, թե արևը փայլեց: Խնձորենու ճյուղերը կռացան պատուհանին, կանաչ մարգագետինները ընդհուպ մոտեցան ալմկոտ ծովի ափին: Զով քամին իր հետ բերեց անտառից թռչունների ղեղգեղանքը, առվակի քչքչոցը, տերևների սոսափյունը, թևերի թափահարումը: Կապուտաչյա աղջիկը նստած էր ծովափին և երգում էր...

— Ա՛յ, այդ շատ լավ է, Հսկա... իսկ քանի՞ լար ունի քո ջութակը:

— Ընդամենը չորս լար:

Եվ այդ չորս լարի վրա, նա ամեն օր ինձ համար նվագում էր այդ երգերը:

* * *

Դա շատ վաղուց էր... Ես նորից քայլում եմ իմ մանկության քաղաքի ծանոթ փողոցներով և հիշում իմ անցյալը:

Գլխավոր հրապարակի վրա գտնվում է Ռևոլյուցիայի թանգարանը: Ես մտա առաջին դահլիճը և զարմանքից քար կտրեցի: Այս ի՞նչ է:

Գնդացիրների, հրանոթների, զրահապատ մեքենաների կողքին, ռևոլյուցիայի հերոս մարտիկների կողքին, տեսա փոքրիկ, գույնը գցած ջութակը:

— Ձեզ համար անհասկանալի՞ է—հարցրեց թանգարանի աշխատակիցը:

— Այո, ինձ համար անհասկանալի է:

— Եվ Ձե՞զ,—հարցրեց նա մոտ կանգնած տղաներին:

— Եվ մեզ համար,—պատասխանեցին նրանք:

— Այդ եղել է քաղաքացիական պատերազմի տարիներին: Պարտիզանական ջոկատ է եկել գանգրահեր, թիկնեղ մի մարդ: Նա ասել է հրամանատարին. «Վերցրեք ինձ ձեզ մոտ»: Հրամանատարը հարցրել է. «Դուք բոլշևիկների հե՞տ եք, կարմիրների կողմի՞ց»:

«Ես վշտի դեմ եմ,—պատասխանել է մարդը,—երկար տարիներ ես թափառել եմ ճշմարտությունը գտնելու համար: Ես ուզում էի իմանալ, որտե՞ղ է նա, և թե ինչու՞ են լաց լինում երեխաները, ինչու՞ են սպիտակում աղջիկները, և արյուն թքում երիտասարդները: Տվե՛ք ինձ հրացան»:

Հետո երկար օրեր, չոր, խանձված տափաստաններով քայլել է ջոկատը... Անչափ դժվար է եղել քայլելը: Զենքի ծանրությունից կռացել են ուսերը, շատերն իջեցրել են հրացանները և քաշ տվել գետնի երեսով: Իսկ առջևում թշնամին է եղել: Երբ հոգնած մարտիկները նստել են հանգստանալու, այդ թիկնեղ, գանգրահեր մարդը դիմել է նրանց.

«Դուք հոգնե՞լ եք, պառկեք, ընկերներ, ես ձեզ համար կնվագեմ մոր երգը, որը կորցրել է իր երեխային...» Եվ նվագել է, մարտիկները լուռ ունկնդրել են, չէ՞ որ նրանցից յուրաքանչյուրն ուներ մայր, կին, կամ քույր...

Ոգևորված այդ երգից մարտիկները կրկին ոտքի են ելել և իրենց փոշոտ ձեռքերի մեջ առած հրացանները՝ նետվել առաջ...

— Ես ճանաչում եմ նրան, ես գիտեմ այդ ջութակահարին,—բացականչեցի ես.—ասացե՛ք, կենդանի՞ է նա:

Թանգարանի աշխատակիցը գլխով արեց.

— Այդ մարտում գնդակը փշրել է նրա թևը:

— Բայց նա կենդանի՞ է, ո՞րտեղ է նա այժմ:

— Ա՞յժմ, քայլեք միջանցքով ցած, բացեք երրորդ դուռը և հարցրեք թանգարանի դիրեկտորին:

Ես վազեցի: Առանց թխկացնելու բաց արի դուռը... և տեսա նրան:

— Հսկա՛,—ասացի ես,—իմ Հսկա, այդ ես եմ:

Սեղանի հետևում նստած ալեհեր մարդը բարձրացավ տեղից և ուրախ գոչեց.

— Հիանալի է, փոքրիկ, ես գիտեի, որ կհանդիպենք:

Ես մոտեցա նրան և ձեռքս դրեցի նրա ուսին.

— Հսկա՛, իմ Հսկա, ափսո՜ս, այժմ դու էլ երբեք չես նվագի ինձ համար այն աղջկա երգը, որ ողջունում էր արշալույսը...

— Մի՛ հուսահատվիր,—պատասխանեց Հսկան,—մի՛ հուսահատվիր: Դու ինքդ շուտով կսովորես և կնվագես այդ երգը ինձ համար: Կնվագե՞ս:

Եվ նա ձախ ձեռքով պինդ սեղմեց իմ ձեռքը:

Այո, գնդակով սպանել չի լինի երաժշտությունը: Ո՛չ:

Երգը երբեք չի լռում:

*Ռուսերենից թարգմ.*
*ՎԱԼԵՆՏԻՆԱ ՄԽԻԹԱՐՅԱՆ*

# ԱՐԵՎԸ, ՔԱՄԻՆ ԵՎ ՑՈՒՐՏԸ

*(Լեհական հեքիաթ)*

*Մի անգամ Արևը. Քամին ու Ցուրտը հանդիպեցին իրար ու սկսեցին վիճել. թե ով է իրենցից ամենաուժեղը։ Նրանց մոտով անցնում էր մի փոքրիկ աղջիկ։ Վիճողները հենց նրան էլ հարցրին.*

*— Ասա՛, աղջիկ, մեզանից ո՞վ է ուժեղը։*

*Աղջիկը մտածեց և պատասխանեց.*

*— Քամին։*

*Բարկացավ Ցուրտը և ասաց.*

*— Դրա համար ես քեզ կսառեցնեմ։*

*Բայց աղջկան հանգստացրեց Քամին.*

*— Մի՛ վախենա, փոքրիկ, այդ ժամանակ ես չեմ փչի։*

*— Իսկ ես կայրեմ քեզ,— աղջկան սպառնաց Արևը։*

*— Մի՛ վախենա. աղջիկս,— ասաց Քամին,— ես քեզ մոտ կլինեմ և կփչեմ։*

*Եվ իրոք. առանց քամու ցուրտը չի սառեցնում, իսկ երբ փչում է քամին. արևը չի այրում։*

*Ռուսերենից թարգմ. Հ. ՀԱԿՈԲՅԱՆ*





# ԱՐՇԱՎԻ ԺԱՄԱՆԱԿ

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Նկ. Ն. ԲՈԺԱՆՋՅԱՆԻ

Այն օրերին ես ձեր տարիքին էի. հազիվ տասներեք տարեկան։ Մի անգամ ամռանը ընկերներով որոշեցինք հեռավոր արշավի դուրս գալ։ Սկզբում, երբ արշավի գնացողներս վեց հոգի էինք, ծնողներս համաձայն չէին։

— Չէ՛, մի փորձանք կբերեք գլխներիդ,— ասում էր մայրս։

— Ախր մի կարգին խելք գլխին մարդ էլ չկա հետներդ, ո՞նց գնաք։ Մթան մի աղվես տեսնեք՝ վախից կցամաքեք,— համոզում էր հայրս։— Մի քանի օր մնաց, ձեր դասատուները կվերադառնան, կխնդրեք՝ մեկն ու մեկը հետներդ կգա։

Իհարկե, հայրս ճիշտ էր ասում։ Շուտով մեր ուսուցիչները վերադառնալու էին Երևանից, ուր մեկնել էին հեռակա ինստիտուտի քննությունները հանձնելու։ Բոլորս էլ համոզված էինք, որ ֆիզկուլտուրայի դասատուն և ավագ ջոկատավարը շատ կուրախանային այդ նախաձեռնության համար և սիրով կղեկավարեին մեր արշավախումբը, բայց սպասե՞լ կլինե՞ր։ Այնպե՜ս էր բորբոքված մեր պատանեկան երևակայությունը, այնպե՜ս, որ մեկ օր էլ չէինք կարող սպասել։ Մենք մտովի արդեն զանազան հետաքրքիր արկածների մեջ էինք ընկնում, ականատես լինում զարմանահրաշ տեսիլքների, հայտնաբերում նոր բնակավայրեր, սարեր, գետեր, լճեր, հավաքում թանկարժեք բույսերի ու քարերի կոլեկցիաներ, որսում կենդանիներ…

Բայց երբ արշավի գնացողներիս թիվը հասավ քսանի, ծնողներս մի կերպ տվեցին իրենց համաձայնությունը։ Այժմ արդեն դեմ չէին նաև Վարդանի, Սուրենի և Աշոտի ծնողները։ Երեկոյան հավաքվեցինք մեր դռան գերանների վրա և մինչև ուշ գիշեր խոսում էինք մեկնելու մասին։ Արշավախմբի ղեկավար ընտրվեց Արսենը, որը տարիքով և ֆիզիկապես ամենամեծն էր մեր մեջ։

Առավոտ շուտ, երբ արևն իր գլուխը դեռ չէր հանել Գելոց սարի հետևից, ուտելիքի տոպրակները կապեցինք շալակներիս ու դուրս եկանք գյուղից։ Երեք կիլոմետրի չափ հազիվ էինք գնացել, մեկ էլ ամբողջ երկինքը ծածկվեց ամպերի բարակ շերտով։ Արև չկար, բայց տաք էր։ Քիչ հետո սկսեց անձրև մաղել և չդադարեց ամբողջ օրը։ Մենք շարունակում էինք գնալ։ Քայլում էինք խիտ-խիտ շարքերով։ Ի՞նչ իմանայինք, որ այդպես կարող էինք տաքահարվել…

Հանկարծ Վրույրը, որն ամենից ավելի տաք էր հագնված, սկսեց հարբած մարդու պես երերալ։ Մենք կարծեցինք, թե կատակ է անում, և մատնացույց էինք անում նրան ու ծիծաղում։ Արսենը նույնիսկ գոռաց վրան, որ վերջ տա իր չարաճճիություններին։ Բայց շուտով նկատեցինք, որ նա դժվարությամբ է քայլում։ Մի քանի հոգի մոտեցանք։ Դեմքը կարմրել էր, շնչում էր արագ-արագ և նայում էր անտարբեր հայացքով։

— Ինչ է, վա՞տ ես զգում,— հարցրի ես։

— Այո,— խեղճ-խեղճ պատասխանեց նա և ձեռքը տարավ դեպի քունքերը,— շատ եմ ցավում, գլուխս պտտվում է, էլ

չեմ կարող քայլել,—ասաց ու երերալով ընկավ մի քարի։

Արշավախումբը կանգ առավ։ Բոլորիս ուշադրությունը Վրույրի կողմն էր։ Շատ էինք անհանգիստ. չգիտեինք ինչ անել։ Մոտերքում մի քարայր կար։ Վրույրին տեղափոխեցինք այնտեղ, պառկեցրինք գետնին, իջեցրինք ուսապարկը և դրինք գլխի տակ։ Հետո Արսենը արձակեց օձիքի կոճակները և գրպանից հանելով իր մաքուր թաշկինակը, տղաներից մեկին ասաց.

— Աշո՛տ, թրջիր ջրով ու բեր, շու՛տ։

— Ջուր որտեղի՞ց,—թաշկինակը վերցնելով ասաց Աշոտը և զարմանքով նայեց Արսենին։

— Վա՛հ,—ավելի զարմացավ Արսենը.—չե՞ս տեսնում աղբյուրը։

Քիչ էր մնում փոթկացնեինք։ Չորս կողմը մեծ-մեծ քարերի վրա անձրևից ջրափոսեր էին գոյացել, իսկ Աշոտի համար մի թաշկինակ թրջելու ջուր չկար։ Դե, նա միշտ էլ այդպես էր. անուշադիր, ցրված։ Օր չըկար, որ մի բան չմոռանար դպրոցում։ Հաճախ էլ տնային տետրը կամ գրիչը հանում էր պայուսակից ու դնում սեղանին, բայց չէր նկատում և սկսում էր նորից պայուսակի մեջ փնտրել։ Աշոտը միաժամանակ շատ էլ ծույլ էր։ Իզուր չէ, որ տղաները երբեմն կատակով ասում էին.

— Մինչև սեղանի վրայից գրիչը Աշոտի ձեռքը չտան, նաշ չի ուտի, կասի՝ գրչալ չկա։

Անձրևաջրով թրջված թաշկինակը դրեցինք Վրույրի ճակատին։ Աշոտը շուտ-շուտ վազում էր դեպի ջրափոսերը և նորից թըրջում թաշկինակը, որ սառը լինի։ Երբ նա վազեվազ գնում էր, Վարդանը նայում էր ինձ ու ծիծաղում անում։ Մի անգամ էլ մոտեցավ ու ականջիս փսփսաց.

— Մի երկու անգամ որ արշավի դուրս գանք, Աշոտի ծուլությունից հետք չի մնա, մի նայիր, թե ինչպե՞ս է վազում,

Երկու ժամի չափ մնացինք քարայրում։ Վրույրն արդեն իրեն լավ էր զգում։ Հաց ուտելուց հետո ճամփա ընկանք։

Բայց հետևյալ օրը մեր արշավախմբի հետ ավելի վատ բան կատարվեց։ Պայծառ օր էր. ամպի ոչ մի կտոր չկար երկնքում։ Մեկս մյուսին նայելով գոտկատեղից վերև մերկացանք։ Արևի կիզիչ ճառագայթների տակ փայլփլում էր տղաների սպիտակ ու նուրբ մարմինը։ Կեսօրից հետո երկինքը ամպեց, և մենք նորից հագանք մեր շորերը։ Վրա հասավ երեկոն, կսկծալով այրվում էին մեր մարմինները, ասես տաք արդուկ էին քսում։ Գիշերը ոչ մեկս չկարողացանք քնել։ Երբ մի բան էր կպչում մեզ, թեկուզ մեր հագի շորերը, անտանելի ցավեր էինք զգում։ Ես մինչև օրս էլ չեմ մոռանում այդ գիշերը։ Վատ էինք զգում նաև առավոտյան։ Շատերը ցավից այնպես էին թուլացել, որ չէին ուզում նստած տեղից վեր կենալ։

— Մենք ենք մեղավոր,— ասում էր Արսենը,—ո՞վ այդքան երկար ժամանակ կարելի՞ էր մերկ մարմնով մնալ ուժեղ արևի տակ։ Բայց խոմ այստեղ չենք մնա. Այսօր երեկոյան տեղ կհասնենք, իսկ վաղը կվերադառնանք։

Մի կերպ ելանք տեղներից և ծույլ-ծույլ սկսեցինք քայլել։



Անտառեզրին հանդիպեցինք մի խումբ մարդկանց։ Ամեն ինչից երևում էր, որ տուրիստներ էին։ Տեսնելով մեր վհատ դեմքերը, մեկը մոտեցավ մեզ ու ասաց.

— Արշավի՞ եք գնում, թե՞ գերեզմանատուն։

Մենք պատմեցինք երեկվա դեպքը։

— Ամեն ինչ պարզ է, արևն է այրել,—բացատրեց փորձված տուրիստը։—Դա ձեզ թող խրատ լինի, որ մյուս անգամ առանց փորձված ղեկավարի հեռավոր ճամփորդության դուրս չգաք։ Ձեզ մոտ սպիրտ կամ օդեկոլոն կա՞։ Ոչինչ, ես կտամ։ Կթրջեք մաքուր շորով և կքսեք կսկծացող տեղերի շուրջը։ Կարող եք նաև կարմրած տեղերին կարագ քսել։ Հա՛, չմոռանամ ասել,— վերջում զգուշացրեց նա,— որ երկու-երեք օր վերնաշապիկներով պիտի մնաք։ Թե չէ՝ արևը որ նորից կպավ, վատ կլինի։

Մենք նրան պատմեցինք նաև Վրույրի մասին և հարցրինք, թե ինչ էր պատահել նրան։

— Տոթահարված կլինի,— ասաց նա,—նման դեպքերում հիվանդին անմիջապես պետք է տեղափոխել զով տեղ, արձակել օձիքի կոճակները, գլխին ու կրծքին սառը թրջոց դնել, իսկ ոտներին՝ տաք ջրով լցված շշեր։ Այնպես պետք է պառկեցնել, որ գլուխը ոտքերի համեմատությամբ բարձր լինի։

Արսենը շատ ուրախ էր, որ առանց իմանալու, ճիշտ էր վարվել, իհարկե, ոչ լրիվ։ Ուրախ էինք նաև մենք, որ հետաքրքիր ու օգտակար բաներ էինք իմանում։

— Այդպիսի օգնություն,— շարունակեց նա,—պետք է ցույց տրվի նաև արևահարության դեպքում, որը առաջ է գալիս այն ժամանակ, երբ արևի ուժեղ ճառագայթները ընկնում են բաց գլխին։

Մենք շնորհակալություն հայտնեցինք տուրիստին և շարունակեցինք մեր ճանապարհը։



**Սիրելի երեխաներ, դուք իմացաք, թե ինչ օգնություն պետք է ցույց տալ տոթահարության, արևահարության և արևից այրվածքներ ստանալու դեպքում։ Բայց այրվածքներ մարդ կարող է ստանալ նաև այն ժամանակ, երբ չի իմանում խարույկի հետ վարվելու ձևը՝ կամ անզգուշորեն ձեռքը կպցնում է տաք թեյնիկին, կերակրամանին, եռացրած ջուր, կաթ ու կերակուր է թափում վրան։ Թեթև այրվածք ստանալու դեպքում, որը կոչվում է առաջին աստիճանի այրվածք, կարմրած տեղերի շուրջը պետք է քսել սպիրտ կամ օդեկոլոն։ Իսկ եթե շատ է այրվածքը, վրան կարելի է դնել կալիումի մարգանաթթվի թույլ մանուշակագույն լուծույթի մեջ թրջած մաքուր շոր և կարագ քսել։ Եթե բշտիկներ են առաջ գալիս (դա արդեն երկրորդ աստիճանի այրվածք է), չի կարելի դրանք պատռել։ Պետք է բավարարվել միայն կալիումի մարգանաթթվի լուծույթի թրջոց դնելով։ Երրորդ աստիճանի այրվածքի դեպքում, երբ մնում է մաշկը, և վերք է առաջանում, պետք է ձկան յուղի հետ ստրեպտոցիդի փոշի խառնել, ապա նրա մեջ թրջած շորով կապել այրվածքը և անմիջապես դիմել բժշկի։**



# ԱՐԵՎ, ՋՈՒՐ, ՕԴ

Առողջ օրգանիզմ ունենալու համար պետք է խստիվ պահպանել ճամբարային ռեժիմը և իմանալ բոլոր այն կանոնները, որոնք պահանջվում են օդից, արևից և ջրից օգտվելու համար:

Դրա համար ես ուզում եմ մի քանի խորհուրդ տալ. չէ՞ որ ձեզանից շատերն այժմ գտնվում են ճամբարներում և առողջարաններում:

1. Օրգանիզմի կոփման ամենից տարածված միջոցը արևային վաննաներն են (լոգանքներ), որոնք նպատակահարմար է ընդունել առավոտյան ժամը 11-ից մինչև 12-ը՝ ուտելուց երկու ժամ անց:

Առաջին օրն արևի տակ պետք է պառկել միայն 5—6 րոպե, այն հաշվով, որ արևի ճառագայթներն ընկնեն մեջքի վրա 2 րոպե, կրծքի վանդակի վրա՝ ես 2 րոպե և մեկ ու կես րոպե՝ երկու կողերի վրա:

Երկրորդ, երրորդ և հաջորդ օրերին՝ ժամանակը կարելի է ավելացնել 2-ական րոպեով, այնպես, որ 24 օրվա ընթացքում հասցվի կես ժամի. ավելին խորհուրդ չի տրվում:

Արևային վաննաների ժամանակ պարտադիր է գլուխը ծածկել ճերմակ շորով կամ պանամա կոչվող լայնեզր գլխարկով:

Արևի տակ արգելվում է քնել, զբաղվել ընթերցանությամբ կամ խաղալ շախմատ և շաշկի:

Ծովի ափին հանգստացող պիոներները պետք է իմանան, որ ծովի լայնածավալ ջրային մակերևույթը անդրադարձնում է արևի ճառագայթները, և այդ պատճառով ավելանում է նրա այրող ուժը: Առաջին օրերին պետք է զգույշ լինել՝ հակառակ դեպքում կստացվեն մաշկի այրվածքներ:

2. Օրգանիզմի կոփման մյուս բնական միջոցը ջուրն է, գետում, լճում կամ ծովում լողանալը: Լողանալը լավ է արևի վաննաներից անմիջապես հետո: Ջուրը պետք է ունենա ամենապակասը 20 աստիճան ջերմություն:

Առաջին օրը խորհուրդ է տրվում լողանալ միայն 3—4 րոպե, իսկ հետագայում ամեն օր ավելացնել ևս երկու կամ երեք րոպե, այն հասցնելով մոտավորապես քառորդ ժամի:

Քրտնած, հոգնած, սոված կամ փառաստ չի կարելի լողանալ: Նպատակահարմար է լողանալ ուտելուց 2 ժամ հետո, առավոտյան ժամը 12—1-ը և երեկոյան ժամը 6-ին (եթե ցուրտ չէ):

3. Փակաս առողջարար նշանակություն չունեն նաև օդային վաննաները:

Բաց օդում, որտեղ ջերմաստիճանը 20-ի է հասնում և չկան արեգակի ուղղահայաց ճառագայթներ, սառն ու անդուր քամիներ, կարելի է ընդունել օդային վաննաներ, որոնց տևողությունն առաջին օրը պետք է լինի 10 րոպե, իսկ հետագայում կարելի է հասցնել մինչև սրական կես ժամի: Օդային վաննաների ժամանակ պետք է կատարել ակտիվ շարժումներ (թույլատրվում է խաղալ, թռչկոտել և կատարել թեթև մարզանք):

Օրգանիզմի կոփման այլ բազմաթիվ միջոցներ և հնարավորություններ կան. ջրաշփումներ, տարբեր տեսակի արշավներ և այլն:

Բժիշկ Հ. Գևորգյան

**Մի անգամ...**

## ՍՐԱՄԻՏ ՊԱՏԱՍԽԱՆ

Հունգարական հայտնի երաժիշտ ու դաշնակահար Ֆերենց Լիստը համերգ էր տալիս Բեռլինում: Դահլիճը լեփ-լեցուն էր: Գերմանական կայսրը նույնպես ներկա էր համերգին: Բոլորը լարված լսում էին, իսկ կայսրը, որ բազմել էր առաջին կարգում, շարունակ զրուցում էր իր կողքի տիկնոջ հետ: Լիստին այդ բանը դուր չեկավ. Նա ուժգին խփեց դաշնամուրի ստեղներին ու հանկարծ... դադարեցրեց նվագը: Հանդիսականները զարմացած նայեցին նրան: Կայսրը սթափվեց ու չհասկանալով կատարվածը, հարցրեց.

— Պարոն երաժի՛շտ, ինչու՞ լռեցիք:

Լիստը գայրացած, բայց զուսպ պատասխանեց.

— Երբ խոսում է Նորին մեծությունը, բոլորը պարտավոր են լռել...

Կայսրը ամոթահար կախեց գլուխը:

## ՆԿԱՐԻՉՆ ՈՒ ՑԱՐԸ

«Պոմպեյի վերջին օրերը» հայտնի նկարից հետո, ռուս մեծանուն նկարիչ Կառլ Պավլովիչ Բրյուլովի փառքը տարածվեց ամբողջ աշխարհում:

Մի անգամ ցարը թատրոն էր եկել: Հենց այն րոպեին, երբ նա օթյակ մտավ, մյուս օթյակում երևաց Բրյուլովը: Նկարչին տեսնելուն պես, ժողովուրդը ոտքի կանգնեց և մեծ ոգևորությամբ սկսեց ծափահարել: Ակամայից սկսեցին ծափահարել նաև ցարի օթյակում գտնվող մեծանուն իշխանավորները:

Ցարը վիրավորվեց: Մի՞թե ժողովուրդը իրենից ավելի էր մեծարում նրան: Բայց անհարմար դրության մեջ չընկնելու համար ինքն էլ ոտքի կանգնեց և ծափահարեց հանճարեղ նկարչին:



# Հարցրու՝ կպատասխանենք

**Սիրելի խմբագրություն, ինձ շատ է հետաքրքրում, թե ինչու երկնային մարմինները գնդի ձև ունեն: Խնդրում եմ գրեք այդ մասին:**

ԷԴՎԱՐԴ ԲԵԺԱՆՅԱՆ
*(Ալավերդու շրջան, Թումանյանի դպրոցի աշակերտ)*

## ԻՆՉՈՒ՞ ԵՆ ԵՐԿՆԱՅԻՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ ԳՆԴԱՁԵՎ

*Բնության մեջ նյութական մասնիկները փոխադարձ կերպով ձգում են իրար: Որքան մեծ է այդ մասնիկներում եղած նյութի քանակությունը, այնքան մեծ է նրանց միջև եղած ձգողական ուժը: Իսկ որքան հեռու են իրարից, այնքան փոքր է նրանց միջև եղած ձգողական ուժը:*

*Անգլիացի հռչակավոր ֆիզիկոս Իսահակ Նյուտոնը առաջին անգամ ապացուցեց, որ վերև նետած քարը նորից երկրագնդի վրա է ընկնում, ձգողական ուժի շնորհիվ: Նյուտոնը բացատրեց նաև, թե ինչու Լուսինը պտտվում է Երկրի, իսկ մոլորակները՝ Արեգակի շուրջը և նրանցից չեն հեռանում: Նյուտոնը ապացուցեց, որ Լուսինն՝ Երկրի, իսկ մոլորակներին Արեգակի շուրջը պահող անտեսանելի ուժը հենց այդ մարմինների միջև եղած ձգողական ուժն է: Երկնային մարմինների գնդաձևությունը բացատրվում է նրանց ներսում եղած մասնիկների ձգողական ուժի և իրենց առանցքի շուրջը կատարած պտույտների համատեղ ազդեցությամբ: Երկնային յուրաքանչյուր մարմին բաղկացած է միլիարդավոր նյութական մասնիկներից: Այդ մասնիկների փոխադարձ ձգողության և երկնային մարմնի առանցքային պտույտը ժամանակի ընթացքում հանգեցրել է մասնիկների կուտակմանը այդ մարմնի ծանրության (ձգողության) կենտրոնի շուրջը: Դրանից էլ մարմինը դարձել է գնդաձև:*

*Եթե երկնային մարմնի պտտման արագությունը բավականաչափ մեծ է, ապա այդ մարմինը սեղմվում է առանցքի ուղղությամբ և ընդունում սեղմված գնդի ձև: Իսկ ավելի մեծ արագության դեպքում մարմինը կարող է ընդունել սկավառակի ձև:*

Ռ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
(Հայաստանի Գիտությունների ակադեմիայի Բյուրականի աստղադիտարանի գիտ. աշխատակից)

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՇԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕԶՈՒՆՅԱՆ Ա.:

**„Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 4.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2—44—83, 2—39—06:

ՎՖ 03497. Պատվեր 687: Տպաքանակ 6200: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 9.VII 1959 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91: Գինը 2 ռ.



### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝
Նկ. Փ. ՄԱԼԱՅԱՆԻ

## ԳԱՂՏՆԱԳԻՐ (ԿՐԻՊՏՈԳՐԱՄԱ)
### «ՏԻԵԶԵՐՔ»



1.— 9,13,11,14,20,8—միջատ,
2.— 23,6,19,20,15—պարսկական տիրակալ չորրորդ դարում,
3.— 18,8,7,4,13—մտերիմ բարեկամ:
4.— 16,22—թռչունի մարմնի մաս,
5.— 17,20,1—ազգության անուն,
6.— 12,6,3—որակական ածական,
7.— 22,5—այգեգործական աշխատանք:
8.— 10,13—առարկա բառի հոմանիշը:
9.— 19,10,2,8,4,13—մանկական ամսագիր,

Բառերը ճիշտ գտնելուց և յուրաքանչյուր թիվը համապատասխան տառով փոխարինելուց հետո, սլաքների ուղղությամբ դուք կկարդաք աշխարհում առաջին անգամ տեղի ունե-



ցած խոշոր իրադարձության վերաբերյալ մի նախադասություն։

*Կազմեց՝ Ա. Միրզոյան*

## ԿԱՐՈ՞Ղ ԵՔ ԽՄԱՆԱԼ

Հայրը երեխաների համար բերել էր երկնիշ թըվով տանձ: Գեղամը տանձերը բաժանեց երեք հավասար մասի, վերցրեց իր բաժինը և գնաց խաղալու: Ցոլիկը կարծելով, թե տանձերը դեռ չեն բաժանված, մնացածը բաժանեց երեք հավասար մասի, վերցրեց իր բաժինը և գնաց հավաքույթի:

Վարուժանը դպրոցից տուն եկավ և, [illegible] նկատելով տանձերը, նույնպես բաժանեց երեք հավասար մասի՝ վերցնելով իր բաժինը: Հայրն իմանալով այդ ամենը, մնացած տանձերը բաժանեց երկու անհավասար մասի, շատը տալով Ցոլիկին, քիչը՝ Վարուժանին:

Այսպիսով բոլորն էլ հավասար քանակությամբ տանձ ունեցան:

Քանի՞ տանձ էր բերել հայրը:

Առաջարկ՝ Ա. Գրիգորյանի



# Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 6

### ԿՐՈՍՎՈՐԴ-ԿՐԻՊՏՈԳՐԱՄԱ

Գունավոր կիսաշրջան—Սվիֆտ, Կերնս, Սերով, Հյուգո, Ռիբակ, Լագին: Սպիտակ կիսաշրջան—Րաֆֆի, Գորկի, Բարտո, Նոսով, Հայնե, Գոգոլ:

### ԳՐԱԿԱՆ-ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԿՐՈՍՎՈՐԴ

Ուղղահայաց— 1. Սադկո. 2. Սիկորա. 3. Բալզակ. 5. օդա. 6. թառ. 8. Սիդ. 9. սոլ. 11. կվարտետ. 12. նոտա. 13. «Ամառ». 14. Իլիական. 20. Տարանտելլա. 22. կոչնակ. 23. Վագներ:

Հորիզոնական—4. Լիրիկական. 7. Դեֆո. 10. Զոլա. 11. Կանդելակի. 17. Մոցարտ, 18. Ալիշան. 19. «Անտառ». 21. Տիգրանյան. 24. օպերա. 25. Գորկի. 20. Արագի:

Կիսաշրջան- 15. Խոջաէյնաթյան. 16. Մանուկ Աբեղյան:

### ԱՅՆ ՈՐ ԹԻՎՆ Է

Այս հետաքրքիր թվի մյուս առանձնահատկությունը այն է, որ եթե որևէ բարդ թվի դասավորությունը փոխենք, ապա սկզբում վերցրած և ստացված թվերի տարբերությունները կըլինի 9. (օրինակ՝ 21—12=9). կամ կբաժանվի 9-ի վրա. (օրինակ՝ 52—25=27, 27 : 9=3):

Նախորդ համարի «Գրական-երաժշտական կրոսվորդը» տըպագրվել է շրջված. ճիշտը կարելի է կարդալ հայելու օգնությամբ:

